# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 2• 89



*Հանձնված է արտադրության 2.11.88 թ.: Ստորագրված է տպագրության 16.02.89 թ.: Թուղթ՝ օֆսեթ, 70×100¹/₁₆: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2.292 պայմ. մամ., 3.9 հրատ. մամ.: Տպաքանակ 62332: Պատվեր՝ 1855: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 2.11.88 г. Подписано к печати 16.02.89 г. Формат 70×100¹/₁₆. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2.92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 62332. Заказ 1855. Цена 15 коп.

Намечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Մենք ընկերներ էինք: Մենք ընկերացանք այն ծանր ու տագնապալի օրերին: Հարձակվել էինք փոստատան վրա. հեղափոխությանը փող էր անհրաժեշտ: Հենց այդ ժամանակ էր Կոբայի ձեռքը վնասվել: Հետագա բոլոր նկարներում Կոբան պատկերված էր լինելու ծալված ձեռքով իր հավերժական ծխամորճը բռնած (այն սարսափազդու գիշերը, երբ իմ աչքի դեմ այլանդակեցին նրա ձեռքը, ես չգիտեի, որ կանգնած եմ մեր գեղանկարչության լավագույն ստեղծագործությունների ներշնչանքի աղբյուրի մոտ): Այո, ինձ համար նա միշտ էլ Կոբա էր: Իմ ընկեր Կոբան: Իմ հայրենակից Կոբան: Իսկ ես նրա համար Գուրամ էի: Մեր այն ջահել օրերին Կոբան կատակել սիրում էր: Երգել՝ նույնպես: Երգում էր հրաշալի, բայց կատակելիս, ճիշտն ասեմ՝ պարզունակ էր, բայց ինքն իր այդ կատակներից թավալգլոր էր լինում, ծիծաղից ուղղակի մեռնում: Կոբան դեռ երիտասարդ էր և ուժեղ, մի տեսակ նեղվում էր իր այդ ուժից՝ ասես ծանր բեռան տակ լիներ:

Բայց ճերմակ ձեռնոցներ հագած պրոֆեսորները չէ, որ հեղափոխություն են կատարում: Պրոֆեսորները գրում են ու մտածում, վիճում ու դատարկաբանում: Իսկ հեղափոխությունը մեծ ու խիզախ գործ է, մեկ-մեկ պետք է բարեկամ ձնանալով թշնամուդ թակարդը գցել կարողանաս, երբեմն չտեսնելու տաս ուրիշի տառապանքները, պետք է սպանես... Եթե դա հեղափոխությունն է պահանջում: Կոբան կարողանում էր: Բոլորից լավ: Կոբան այդ «պրոֆեսորներին» պետք էր հեղափոխության սև աշխատանքի համար: Երդվում եմ՝ նրանք բոլորն էլ թաքուն արհամարհում, ատում էին նրան ու վախենում նրանից: Իսկ ես սիրում էի: Որովհետև համկանում էի իմ նենգ ու անգութ ընկերոջ՝ հեղափոխության հովազի ցասումը:

... Շատ տարիներ ես ու Կոբան կիսեցինք նույն աքսորն ու մի կտոր հացը: Եվ ահա կիսեցինք նաև միևնույն ուրախությունը. մեր հեղափոխությունը հաղթանակեց: Եթե միայն մեկնումեկն այն ժամանակ մեզ հուշե՞ր, թե ով է դառնալու մեր ոչ այնքան գրագետ, ռուսերեն պղդքան վատ խոսող ընկերը...

Իսկ հետո... Ես չեմ պատմի այն, ինչը լավ հայտնի է ամենքին. ինչպես սկսեցին անհետանալ բոլոր այն պրոֆեսոր-

ԷԴՎԱՐԴ ՌԱԶԻՆՍԿԻ

# Սիրո մասին առ ընկերը

Թարգմանեց ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆԸ

դատարկաբանները՝ Կոբայի թշնամիները… Ինչպես հետո սկսեցինք անհետանալ և մենք՝ նրա ընկերներն ու ազգակից-վրացիները… Ոչ, այն ժամանակ մենք նրան ճշմարտությունը ոչ թե պարզապես ասում, այլ… երեսին գոռում էինք: Գոռո՜ւմ: Եվ անհետանում… Թերևս՝ ստում եմ. ուրիշներն էին գոռում ու անհետանում… Իսկ ես լռում էի: Այն ժամանակ Թբիլիսիում էի ապրում, բանաստեղծների բարեկամն էի… Եվ լռում էի.. Հիշում եմ՝ ձերբակալեցին Տիցիան Տաբիձեին… Բռնեցին ուրիշ հրաշալի բանաստեղծների: Իմ ծանոթներից, թերևս, միայն անանշան բանաստեղծ Դատոն մնաց… Ո՞նց էր ամաչում Դատոն. բոլոր մեծերին բռնեցին, իսկ ինքը մնաց: Մի՞թե ինքն այդքան անանշան էր: Հիշում եմ՝ ինչպես էր Դատոն հույս փայփայում, թե իրեն ուղղակի մոռացել են, ինչպես էր ամեն գիշեր սպասում: Բայց նրա ետևից այդպես էլ չեկան: Ու նա այլևս չէր դիմացել, հագել էր չերքեզկան, հեծել ձին ու սլացել հրապարակ: Առավոտ էր: Նա միայնակ սիգարշավել էր դատարկ հրապարակում: Վերջապես բացվել մի պատուհան, դուրս էր ցցվել մի գլուխ, ու արհամարհանքով բղավել էին. «Տո՛ւն գնա, Դատո՛: Ինչ ուզում ես արա, դու իսկական բանաստեղծ չես…»

Իսկ ես լռում էի: Ես թաքնվել ու լռում էի… Երդվում եմ՝ ես անվախ մարդ եմ, և դա հաստատվել է հեղափոխության օրերին: Բայց լռում էի: Ես, որ չէի վախենում ոչ մեկից, վախենում էի Կոբայից: Քանի որ գիտեի նրան: Սակայն լռելն էլ չօգնեց:

Բանտում խելահեղ վիճակում էի, Կոբայի հետ տեսակցություն էի պահանջում: Ոչինչ չէի ստորագրում և ուտելիքից էլ հրաժարվել էի: Օր ու գիշեր պընդում էի. միացրեք ինձ Իոսիֆ Վիսսարիոնովիչի հետ: Ես սպառնում էի, շարունակ կրկնում էի նրա հետ մեր բարեկամության ու հեղափոխության թշնամիների մասին: Աստվա՜ծ, ինչ տառապանք ասես չեմ կրել: Բայց չէի հանձնվում: Վերջապես քննիչին այդ ամենը ձանձրացրեց, և նա ատամների արանքից ինձ սուսիկ-սուսիկ ասաց. «Դուք հասակ առած, փորձված մարդ եք: Մի՞թե կարծում եք, թե Նրա մտերիմներին կարելի է ձերբակալել առանց Իր թույլտվության»: Ու ծիծաղեց: Ու ես նույնպես ծիծաղեցի: Եվ ամեն ինչ ստորագրեցի: Ես իմ բանտախուցը վերադարձա և ջղաձիգ հռհռում էի: Որքան կարոտ է մարդը ափոփիչ ինքնախաբեության, ինչպիսի պատրաստակամությամբ է ինքն իրեն զրկում մըտածելու ունակությունից: Միայն թե չըմեռնի հույսը: Ախր այդ ինչպե՜ս ես, որ երկար տարիներ ճանաչում էի նրան, կարողացա մտածել, որ…

Ինձ տասը տարի տվեցին՝ մեղադրելով լրտեսության մեջ… հօգուտ Ճապոնիայի: Դա Կոբայի՝ իր հին ընկերոջն ուղղված վերջին ծիծաղաշարժ «մնաս բարովն» էր: Ինչ կարելի էր անել, այժմ նա աստված էր և ազատվում էր մեզանից, անցյալի իր ոչնչության վկաներից: Նա այլևս չէր ուզում մեզ՝ իր ընկերներին, իր հավատարիմ ընկերներին, որ մի ժամանակ իրեն հավասար էին, իր կողքին տեսնել:

Բանտում մնացի չորս տարի: Սպիտակեցի, ատամներս թափվեցին, բայց դիմացա. ցարական տաժանակրության դպրոց էի անցել: Միակ բանը, որ տառապանք էր պատճառում ինձ, ընտանիքիս գլխին կախված աղետն էր: Ես գիտեի, որ կինս՝ մանկահասակ աղջիկս գրկին, թափառում էր անկյունից անկյուն, որ նրան հալածում էին, ինչպես ժանտախտով վարակվածին: Զրկանքների մեջ էր մեծանում աղջիկս, բայց մայրը նրան միշտ պատմում էր պարտիային, հեղափոխությանն ու անձամբ ընկեր Ստալինին իմ նվիրվածության մասին: Աղջիկս ինքնիրեն գրել սովորեց, որպեսզի նամակներ գրի Իոսիֆ Վիսսարիոնովիչին: Ամեն օր վեցամյա դստրիկս հերթական նամակն ուղարկելու համար գնում էր փոստատուն: Գրում էր, որ հայրը զրպարտված է, և խնդրում էր պատժել թշնամի զրպարտիչներին: Եվ

այսպես օր-օրի, չորս տարի շարունակ:

Չորս տարի անց տեղի ունեցավ անհավատալին: Ինձ ազատեցին: Եվ ահա ես ազատության մեջ էի: Ու կրկին՝ հրբաշք. ինձ թույլ տվեցին տեղափոխվել Մոսկվա:

Հրատարակչությունում խղճուկ սրբագրիչ էի: Բայց երջանիկ էի, որովհետև կինս ու սիրունիկ աղջիկս նորից կողքիս էին: Միայն ճամբարներից հետո կարելի է հասկանալ, թե ինչ երջանկություն է ազատությունը: Ինչ բավականություն էի ստանում փողոցներում միայնակ շրջելու, կուշտ հաց ուտելու, գինի խմելու և հարազատների դեմքերը տեսնելու հնարավորությունից: Ոչ, ոչ, թերևս կյանքում առաջին անգամ ես ողջ էությամբ երջանիկ էի:

Եվ ահա մի օր վազելով իմ աշխատասենյակը մտավ հրատարակչության դիրեկտորը. «Ձեզ հեռախոսի մոտ են կանչում: Անհապաղ»:

Դիրեկտորի հեռախոսի ընկալուչը կողքի էր դրված: Նա մեծարանքով վերցրեց այն և, ինչպես թանկագին իր, մեկնեց ինձ.

— Հիմա ձեզ հետ կխոսեն,— ասացին լսափողի մեջ...

— Այդ դո՞ւ ես, Գուրամ,— հարցրեց ծանոթ ձայնը:

— Ես եմ,— ձայնս դողում էր: Եվ տանջալից ընդմիջումից հետո, որ ինձ վրա մի կյանք նստեց, որովհետև ես չգիտեի, ինչպես դիմել նրան (ինչպես էի վախենում սխալվելուց), ես եմ... Իոսիֆ Վիսսարիոնովիչ... Բարև ձեզ:

— Բարև,— ձայնը մեղմորեն շարունակեց,— դու հիմա պատահաբար ազատ չե՞ս:

— Ազատ եմ... իհարկե, ազատ եմ...

— Ես ուրախ եմ, որ ազատ ես... Որ այդպես է՝ եկ ինձ մոտ:

— Իսկ ինչպե՞ս, Իոսիֆ Վիսսարիոնովիչ,— անմիտ հարցրեցի ես:

— Քեզ ամեն ինչ կբացատրեն,— ձայնը քնքշորեն ծիծաղեց:— Քեզ ամեն ինչ կբացատրեն, Գուրամ:

Կապն ընդհատվեց, և նույն պահին էլ բացվեց դուռը, աշխատասենյակ մտավ զինվորական համազգեստով շատ քաղաքավարի մի մարդ:

... Կոբան ինձ ընդունեց հսկայական մի աշխատասենյակում: Նա կանգնել էր թղթերի տակ ծանրացած սեղանի մոտ՝ ծխամորճը ծալված ձեռքին: Ես կանգ առա դռան շեմին, բարևեցի:

Նա երկար զննեց ինձ և թախծալի ասաց.

— Իսկ դու բոլորովին ճերմակել ես, Գուրամ:

Ես՝ քրտինքի մեջ ողողված, շշնջացի.

— Տարիները, Իոսիֆ Վիսսարիոնովիչ:

Նա նայեց ինձ, և հանկարծ նրա աչքերը բոցկվեցին, ու կատաղությամբ բացականչեց.

— Այդ երբվանի՞ց ես սկսել ինձ հետ «դուք»-ով խոսել:

Սարսափահար՝ ես կորցրեցի խոսելու ունակությունս: Գիտեի. մեկ անճիշտ բառ՝ ու ես կրկին այնտեղ կլինեմ: Եվ նորից աղետալի վիճակի մեջ կընկնի ընտանիքս:

Ես բարձրացրեցի աչքերս և հանդիպեցի նրա կատաղի, սարսափելի հայացքին: Դա հենց նույն այն հայացքն էր... երբ մենք գիշերով սլանում էինք փոստատան վրա: Այո, ես ճանաչեցի նրան, այդ նա էր, իմ ընկեր Կոբան: Եվ ինձ համակեցին պատանեկության հիշողությունները: Սիրով, թախծալի, անկեղծ սիրով ես նայեցի նրան: Եվ նա դա զգաց, քնքշացավ ու գրկեց ինձ: Ես հասկացա. առաջին փորձությունը հաջող եմ անցել:

— Երբեք, ինձ երբեք «դուք»-ով չդիմես, լսո՞ւմ ես: Քանիսն ենք մնացել որ...

Քանի հոգի էին մնացել մեզանից՝ ազգակից-ընկերներից: Մեզանից՝ իրար սիրող, ընկերոջ համար մեռնելու պատրաստ հուսաբեկ վրացի տղերքից: Ոչ-ոք, ոչ-ոք. մի քանիսին նա բանտ էր նետել, մի քանիսին՝ գնդակահարել, մյուսներին էլ ստիպել էր ինքնասպան լինել... Սերգո, Լադո... աստված իմ, բավական է:

Նա նայում էր աչքերիս մեջ: Ես բանտ էի նստել, գերազանցությամբ ավարտել նրա համալսարանները: Եվ իմ աչքերում միայն սեր ու հավատարմություն էր: Առաջնորդի ու ընկերոջ նկատմամբ: Ես հաջողությամբ անցա նաև երկրորդ փորձությունը:

Իսկ հետո նա ինձ սեղանի մոտ կանչեց և մի գիրք ցույց տվեց: «Ընձենավորը» էր, ռուսերեն թարգմանությունը: Նա հիշում էր, որ ես շատ եմ սիրում այդ ստեղծագործությունը, ինչ-որ ժամանակ աքսորում, ես նրա համար արտասանում էի այն, իսկ ինքը հորանջելով լսում էր:

Նա վերցրեց գիրքը և, ծուռումուռ մատներով քնքշորեն բռնած, ինձ մի քանի դիպվածական պարզունակ հարց տվեց:

Ես պատասխանեցի: Նա շնորհակալություն հայտնեց և հենց գրքի լուսանցքում էլ ինչ-որ բան գրեց: Հետո պարզաբանեց.

— Այստեղ ընկերներն ինձ խնդրել են վերախմբագրել ռուսերեն թարգմանությունը, և ես իմանալով քո մեծ սերն այս գրքի նկատմամբ (նրա դիվային հիշողությունը), որոշեցի քեզ հետ խորհրդակցել:

Նա իրոք խմբագրեց: Նա՝ մի ողջ երկրի ղեկավարը, դեռ ուզում էր «Ընձենավորը» խմբագրել: Նա, որ սոսկ եկեղեցական-ծխական դպրոց էր հաճախել, ամենայն լրջությամբ խմբագրում էր ինչ-որ մեկի երկարամյա աշխատանքը: Խմբագրում էր մի լեզվով, որով գրելիս սըխալներ էր թույլ տալիս: Բայց հավատում էր, որ կարող էր նաև այդ անել: Իսկ գուցե դա նո՞ր մի փորձություն էր: Մե՞կը ևս: Նա ուշադրությամբ աչքերիս մեջ էր նայում: Բայց, երդվում եմ, նրանցում գրված էր միայն հետևյալը. «Բոլոր ժամանակների ու ժողովուրդների մեծագույն հաճճարը խմբագրում է այն ստեղծագործության թարգմանությունը, որը ստեղծվել է նրա հայրենիքում»:

Նա բավարարված էր: Մենք հրաժեշտ տվեցինք:

— Լսիր,— ասաց նա, երբ ես արդեն դուրս էի գալիս,— քանի՞ տարի է, որ չենք տեսնվել: Լավ չէ, Գուրամ: Դու ինձ տուն պետք է հրավիրես. կնստենք, ինչպես մի ժամանակ, կխոսենք, կերգենք:

— Բայց, Կոբա, իմ տանը բավական նեղվածք է...

Բանտից դուրս գալուց հետո ինձ ընտանիքիս հետ միասին մի հսկայական կոմունալ շենքում էին տեղավորել: Տասներկու հարևաններին՝ մեկ զուգարան և մեկ խոհանոց: Ապրում էինք խղճուկ մի սենյակում:

— Ամոթ չէ՞, Գուրամ: Հիշո՞ւմ ես ինչպես էինք ապրում հեղափոխությունից առաջ: Մի՞թե դա մեզ խանգարում էր զըվարճանալ: Ի՞նչ կա աշխարհում ավելի հրաշալի, քան ընկերոջ տունը:

— Դու ճիշտ ես: Ես ուրախ կլինեմ, քեզ տեսնել իմ տանը, Կոբա:

— Ուրեմն՝ վաղն ինձ սպասիր: Եթե չես առարկի, ես մերոնցից մեկնումեկին էլ ինձ հետ կբերեմ:— (Եվահա այդ պահին քիչ մնաց ցնցվեի. «մերոնցից» ոչ մեկն արդեն ողջ չէր):— Նա ուշադիր ինձ նայեց և միայն հստակ հայացքս տեսնելով, մի փոքր դադարից հետո ավելացրեց.— Դե Լավրենտիին...

Դեմքիս միայն ուրախություն էր:

Իսկ հետո ես տուն էի քայլում և ամենավերջին բառերով հայհոյում այդ պոռնկորդի Լավրենտիին, կեղտոտ վիժվածք շանը, վախկոտ մարդասպանին, որը երբեք էլ «մերոնցից» չի եղել, որին հեղափոխության օրերին մենք նույնիսկ չգիտեինք էլ: Դահիճ, որը լույս ընկավ հետո... Ես ամբողջ կոկորդով ռուսական ճամբարային և վրացական հայհոյանքներ էի անում գիշերվա մեջ: Ու լալիս էի:

Մյուս օրն առավոտյան մեզ մոտ հայտնվեցին միանման կոստյումներ հագած մարդիկ: Իմ բոլոր տասներկու հարևաններին իրենց սենյակները քշեցին, դժբախտները նույնիսկ զուգարան գնալ չէին կարող: Հետազոտեցին բնակարանը, միջանցքից հանեցին բոլոր սնդուկները, լվացքի ամանները, հեծանիվները, ամբողջ կոշկեղենն ու հագուստեղենը: Սատանայական մաքրություն տիրեց, երիտասարդ մարդիկ տեղ գրավեցին լողասենյակի ու խոհանոցի մուտքերի մոտ, անկյուններում: Բղավոցներով իրար էին կանչում: Նրբանցքն ու ողջ շենքը շրջապատված էին, նույնիպիսի երիտասարդ մարդիկ էին շրջում հարկերում, իսկ ժամը վեցից մեր սանդուղքին ոչ մի շարժում չկար: Վերջիվերջո ժամը 7-ին մեքենաներ մոտեցան. սկզբում՝ երկուսը, հետո՝ երեքը, իսկ հետո դատարկ միջանցքում շատ անսպասելի հնչեց դռան զանգը:

... Մենք նստել էինք մեր նեղլիկ սենյակում, խմում էինք հրաշալի վրացական գինին, որ ինքն էր բերել, և երգում էինք մեր վրացական երգերը: Կողքիս նստել էր կինս և հիացմունքով նայում էր Կոբային: Նա տարիքով ինձանից շատ փոքր էր ու չէր հիշում հեղափոխությունը: Մեր այդ օրվա հյուրը նրա համար երկընքից իջած աստված էր:

Կոբան աղջկաս նստեցրել էր ծնկներին, և վերջինս չէր համարձակվում շարժվել: Կարճ ու հաստ մատներով քնքշորեն շոյում էր աղջկաս ականջը. դա Կոբայի ամենասիրելի փաղաքշանքն էր: Մենք հիշեցինք տաժանակրության ու աքսորի (ցարական) օրերը, հիշեցինք անկեղծ ընկերներ (նախկինները): Ու մեր բարեկամներին, մեր այն եզակի բարեկամներին, որոնք իրենց մահով էին մահացել:

Իսկ հետո նորից երգում էինք: Ինչ լավ

էր երգում: Եվ ընդհանրապես Կոբան հըրաշալի լսողություն ուներ. նա լսում էր նույնիսկ այն, ինչ հարևան սենյակում էին փսփսում: Եվ ձայն ուներ, փոքրիկ, բայց ուներ...

Նա սիրալիր ինձ էր նայում, և ես սիրում էի նրան: Ամբողջ սրտով ես սիրում էի մեր պատանեկությունը, մեր երազանքները, մեր փոքր արևային հայրենիքը: Իմ սիրելի ընկեր Կոբա:

Նա ուշադրությամբ հետևում էր, որ ոչ մի բաժակաճառ բաց չթողնեմ, որպեսզի ժամանակին իրար ետևից դատարկեմ բաժակները: Բայց գինուց իմ անձնվեր սերը միայն ավելի էր մեծանում: Այստեղ նա սխալվեց: Իմ սերը նրա նկատմամբ միայն մեծանում էր: Ամբողջ երեկո:

Եվ ահա այդ ժամանակ, շարունակելով փափկորեն շոյել աղջկա ականջը, նա հանկարծ ասես պատահաբար փնթփնթաց.

— Ախ, դու հենց նա՞ ես:

Եվ աչքերը չոեց վրաս... «Ուրեմն՝ աղջկա նամակները նա կարդում էր: Գիտեր, որ ողջ այս տարիների ընթացքում իմ դժբախտ, կիսաքաղց աղջիկը ամեն օր գրում է իրեն»: Ես կատաղությամբ նրան էի նայում: Չէի ուզում թաքցնել այդ: Արդեն ուշ էր թաքցնել: Ու նա քմծիծաղ տալով, նայում էր վրաս: Եվ նույն պահին վրացի հոր վայրագ հայացքը չքացավ. Կոբային էին նայում խղճուկ, խամրած, աղաչական մի զույգ աչքեր:

Հետո նրանք հեռացան: Գիշերն արթուն սպասում էի: Ես գիտեի, դա տեղի կունենա լուսաբացին:

Բայց լույսը բացվեց, և ոչինչ էլ տեղի չունեցավ: Շաբաթվա վերջում ինձ վերականգնեցին նախկին պաշտոնիս:

Հիմա, ետ նայելով, ես հասկացա, թե որքան սխալ էի այն սարսափելի գիշերը: Որովհետև միայն այն պահին, երբ նա տեսավ, թե ինչպես վայրկենական կատաղի հայացքն իմ ակնթարթորեն փոխարկվեց հաճոյակատար վախի, միայն հենց ա՛յդ պահին ես դիմացա նրա փորձարկմանը: Քանի որ միայն այդ ժամանակ Կոբան վերջնականորեն հասկացավ. չկա այլևս քաջ Գուրամը: Կա միայն վախկոտ ստրուկը, պոչ խաղացնող շունը՝ ամեն ինչի պատրաստ: Այո, ես պատվով դուրս եկա այդ փորձությունից: Իմ ընկեր Կոբայի փորձությունից:

Իսկ հետո եղան մեծ պատերազմ ու մեծ հաղթանակ:

Ողջ այդ տարիներին ես Կոբայի հետ «դու»-ով էի խոսում: Բայց ամեն անգամ, երբ արտաբերում էի այդ «դու»-ն, մահվան վախը սեղմում էր սիրտս: Նա տեսնում էր այդ, և նրա հայացքը քնքշանում էր: Նա հիշում էր մեր պատանեկությունը, մեր եղբայրությունը: Եվ տեսնելով իմ վախը, հասկանում էր իր ուղու մեծությունն ու երկարությունը:

51 թ.-ին ես նրան հանդիպեցի վերջին անգամ: Ինչ-որ նիստից հետո նա ինձ իր հետ ամառանոց տարավ: Հուլիսյան տոթ երեկո էր, Կոբայի տրամադրությունը շատ լավ էր: Մենք ընթրեցինք, ֆիլմ դիտեցինք կովբոյների մասին, իսկ հետո նրա սիրած կինոկատակերգությունը՝ «Վոլգա-Վոլգան»: Դա նրա հանելուկներից մեկն էր: Ես հասկանում եմ՝ ինչու էր նա սիրում հետապնդումներով ու սպանություններով լի կովբոյական ֆիլմերը: Բայց ինչո՞ւ էր նա միլիոներորդ անգամ դիտում այդ հիմար «Վոլգա-Վոլգան»: Ասում էին, թե նա սիրահարված է կինոդերասանուհի Լյուբով Օրլովային, բայց դա կլիներ մարդկային հասարակ բացատրություն, որ իսկի Կոբային չէր բռնում:

Հետո մենք ծառուղում զբոսնում էինք, Կոբան փոքր-ինչ առջևից էր քայլում, ցածրաձայն երգելով իր սիրելի «Սուլիկոն»: Իսկ ես՝ նրա ետևից:

— «Շիրիմն էի փնտրում սիրելիի, բայց հեշտ չէր այն գտնել... երկար, ես երկար տանջվեցի...»,— երգում էր Կոբան:

Ես արդեն պատրաստվում էի մեղմորեն ձայնակցել. Կոբային դա շատ էր դուր գալիս:

— «Երկար, ես երկար տանջվեցի»,— Կոբան հանկարծ մի պահ, միայն մի պահ ընդհատեց երգեցողությունը, և լռության մեջ շատ իրական լսվեցին նրա խոսքերը. նույնիսկ ոչ թե խոսքերը, այլ փնթփնթոցը.

— Դժբախտ... դժբախտ... դժբախտ Սերգո...

Քրտինքի մեջ կորել էի: Իսկ նա շարունակում էր երգել, վերջացնելով տունը «Դո՞ւ ես արդյոք, իմ Սուլիկո»:

— Տի-րա-րի-րա-րա-րա,— Կոբան շարունակում էր մտասույզ երգել,— տի-րա-րի-րա-րա-րա..— Եվ կրկին լսվեց նրա փնթփնթոցը.— Դժբախտ... դժբախտ Լադո...

Եվ նորից նա սկսեց սկզբից.

— «Շիրիմն էի փնտրում սիրելիի...»—

նա կանգ առավ և էլի փնթփնթաց.— դժբախտ... դժբախտ...

Այո, նա փնթփնթում էր մեր ընկերների, մեր հրաշալի ու մեծ ընկերների անունները, բոլոր նրանց, ում կործանել էր: Երկար նա երգում էր իր «Սուլիկոն»: Ստիպված եղավ շատ անգամ կրկնել տըները, որպեսզի կարողանա հիշատակել բոլորի անունները: Որովհետև նա ավելի շատ էր սպանել, քան ցանկացած ժանտախտը:

Եվ ես անընդհատ քայլում էի նրա ետևից՝ վախից խելքս թռցրած:

— «Երկար, ես երկար տանջվեցի, ախըր ո՞ւր ես, ո՞ւր, դու իմ Սուլիկո»,—երգում էր Կոբան,— դժբախտ, դժբախտ Սերգո...

Եվ հանկարծ նա իմ կողմը շրջվեց.

— Չկա՛, չկա՛ Սերգոն: Չկա՛ մեր Սերգոն...

Աչքերում արցունքներ կային, երդվում եմ՝ արցունքներ: Ես չդիմացա, ես նույնպես լաց եղա ու նրա գիրկը նետվեցի:

Մի ակնթարթ նրա դեմքը բռնկվեց կատաղությամբ: Հաստ, սարսափելի քիթն ու կրակված աչքերը ընդհուպ մոտեցել էին դեմքիս: Եվ նա բղավոցով ինձ մի կողմ հրեց.

— Չկա՛ Սերգոն: Չկա՛ Լադոն: Ձեզնից ոչ ոք չկա: Դուք բոլորդ ուզում էիք սպանել Կոբային: Բան դուրս չեկավ, մանկամիտներ: Չէր լինի, երեխաներ: Նա ինքը ձեզ սպանեց:

Եվ սլացավ ծառուղով, սապոգով հարվածելով պահապաններից մեկի հետույքին: Վերջինս չհասցրեց խույս տալ:

Ու կրկին ամբողջ գիշեր չքնեցի: Եվ սկսվեց վախկոտ լուսաբացը: Հաջորդ գիշեր էլ չքնեցի: Ես սպասում էի:

Բայց ոչինչ էլ չպատահեց: Ո՛չ այդ գիշեր, ո՛չ էլ իմ ամոթալի հաջորդ գիշերներին: Ուղղակի այլևս երբեք նրան չտեսա:

Բարեկամ Կոբան դադարեց իր մոտ կանչել իր հին բարեկամ Գուրամին: Եվ վերջ:

Բայց մինչև Ահեղ դատաստան ես չեմ մոռանա՝ ինչպես էր նա քայլում ծառուղով, երգում մեր երգն ու փնթփնթալով տալիս մեր անունները: Եվ ինչպես էր լաց լինում:

Քանի որ մենք սիրել գիտենք ընկերներին... անկախ ամեն ինչից:

«Հեշտ է եղբոր, քան թե ընկերոջ մահը»,— այսպիսի ասացվածք...

## Կակաչները

Կակաչները այն աշխարհում,
Որտեղ պայքարն է մղվում,
Որտեղ արյունն է թափվում.
Գլխիկները խոնարհած
Սև գույնով են ներկված:

Կակաչները այն աշխարհում,
Ուր խնդությունն է տիրում,
Ուր խաղաղ կյանքն է իշխում.
Գլխիկները վեր պարզած
Ճերմակ գույնով են ներկված:

Կակաչները այն աշխարհում,
Որտեղ արևն է շողշողում,
Որտեղ սերն է հրով վառվում.
Գլխիկները իրար հյուսած
Կարմիր գույնով են ներկված:

ՀԵՐԻՔՆԱԶ ՀՈՎՍԵՓՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջ., Նոր Կեսարիա, 9-րդ դասարան

## Փոքրիկի երազանքը

Թռչել, թռչել գիրկն արևի,
Քնել գրկում իր տաքուկ,
Անուշ-անուշ երազ տեսնել,
Պատմել շողին իր մասնուկ:

Ու երբ փոքրիկ ամպիկը գա՝
Ծածկի կարմիր արևին,
Ես կնստեմ ամպի վրա,
Ու հյուր կգա մեզ քամին:

Նա կփչի ամպի վրա,
Ու կթռչենք մենք հեռու,
Կտեսնենք շատ-շատ քաղաքներ,
Սար, ձորեր՝ խոր, ահարկու:

Բայց ամպիկն իմ ճերմակ, փոքրիկ,
Ջուր դարձած կթափվի ցած.
Վա՜յ, ընկնում եմ, հասեք, մարդիկ,—
Կգոչեմ ես վախեցած:

Ու մի ուրիշ բարի ամպիկ
Ինձ կգրկի, ու նորից
Կբարձրանանք անհաս երկինք,
Հեքիաթ կասենք բարձունքից:

ՔՐԻՍՏԻՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ
Երևան, № 170 դպրոց, 7-րդ դաս.



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

●●●

Դե, ինչ ասեմ,
Ես գրում եմ, թեպետ դեռ թույլ, բայց
գրում եմ,
Բայց չեմ ստում, կեղծում երբեք։
Ինչ կա իմ մեջ՝ թե լավ, թե վատ, ես
պարզում եմ,
Ինչո՞ւ խաբեմ, ինչպե՞ս խաբեմ։
Դե լավ, սրանք մի կողմ թողնենք,
Վատը միշտ կա, լավը կերտենք։
Ինչպես ասի, ես գրում եմ
Ու աշխարհը, իմ անկյունը տիեզերքի
Ես երգելով՝ ընկալում եմ։
Մանկաբարբառ, բայց և հատուկ
Խառն ու ազատ իմ երգերով
Ես տեսնում եմ՝ ի՞նչը, գիտե՞ք, տեսանելին։
Զարմանո՞ւմ եք, մի զարմացեք.
Մենք բոլորս նկատում ենք
Շրջապատը, տեղաշարժը,
Բայց անճարակ ու կարկամած հարցնում
ենք.
«Ինչպե՞ս եղավ, ո՞նց պատահեց»։
Դե, տեսնո՞ւմ եք,
Բազում հարցեր սպասում են լուծումների,
Գուցե և ճիշտ, գուցե սխալ,
Բայց և այնպես՝ լուծումների...
Գուցե խրթին բացատրեցի,
Դե, ինչ ասեմ, ինձ կներեք,
Միշտ թևում է ու ճախրում է միտքս առաջ,
Իսկ գրիչս՝ համրաքայլ է, համրաքայլ է,
ինչպես կրիա...

ԿԱՐԵՆ ՂԱԶԱՐՅԱՆ
Նոյեմբերյանի շրջ., գ. Բերդավան, 9-րդ դաս

●●●

Բոլորս խենթացել,
Շտապում անվերջ,
Թե ուր ենք գնում,
Մենք էլ չգիտենք։
Եվ մենք, որ մտքով,
Խղճով սեփական,
Տիեզերք հերկում,
Սարր ենք բաժանում՝
Զուլվել ռազմաշունչ
Դարի կրքերին՝
Սաշեղի նման
Հետ-հետ ենք հրվում։
Բայց կա՛նգ առ, սանձվի՛ր,
Սթափվի՛ր, աշխա՛րհ,
Թե շարունակես
Վազքդ խելահեղ,
Այնժամ կտեսնես,
Որ ինչ-որ «սափիեն»
ԱԷԿ-ում գտած
Գանգը մարդկային,
Գետին գլորում,
Ու քրքջում է։
Զարմանում եք, չէ՞,
Բայց դաժան չեմ ես,
Ոչ էլ վատատես,
Այլ դարի վեճից,
Օրհաս վիճակից
«Վաղն» եմ նկատել,
Եվ նույն վաղվա մեջ
Գուցե հենց այսօր
Ուժեր են ելնում,
Ուժեր գումարվում.
Խորհուրդ են դառնում...
Որ մարդու ցեղը
Դարերում հաջորդ
Հանճար արարի,
Բայց ոչ թե ռազմի,
Այլ՝ Շինարարի։
Ես հավատում եմ,
Կհաղթանակի
Արմատն Արդարի։

## ՍԻԼՎԱ ՍԻՓԱՆՈՒՀԻ



Իմ մանկության ձորերում
աղավնիներս են քնած,
Ու իմ ձայներն են քնած
քարափների քերծերին:
Խենթ Դնեբեդիս ջրերում
իմ ծիծաղն է փշրվել,
Ու իմ լացն է պատռվել
ալ մասրենու փշերին:

Գնամ, նորից գտնեմ ինձ
իմ մանկության նման պարզ,
Հորս շիրիմը գտնեմ
իմ մայրիկի աչքերում.
Ու համբուրեմ ես մորս
տխրությունը չհոգնած,
Ու հայրական իմ տան մոտ
վառեմ խարույկ չմարող:

Գնամ, կարոտս վառեմ
իմ հայրիկի շիրիմին,
Ու մանկության հուշերով
ամենքի մեջ արթնանամ,—
Մորս տխուր աչքերում
ես արևներ նկարեմ
Ու իմ ձայնի ետևից
դեպի սարը բարձրանամ:



Աղավնիներ իմ բարի,
աղավնիներ մանկության,
Դուք ապրում եք երգիս մեջ,
դուք ինձ հետ եք ամենուր:
Մեր տան փլված տանիքին
դուք ձեր բույները հյուսեք—
Աղավնիներ իմ անմեղ,
աղավնիներ իմ մաքուր:

Տարեք կարոտս ձեզ հետ,—
թող ես գամ ձեր ետևից,
Ու ձեզ փնտրեմ, չգտնեմ
իմ կարոտի ձորերում,
Վշտից փակվել է հոգիս,—
լուսավորեք լացը իմ,—
Աղավնիներ իմ անմեղ,
աղավնիներ իմ մաքուր:

Տեսեք, թեքվում եմ արդեն,—
ես չեմ գտնում ձեր ճամփան.
Հոգիս երկինք դուք տարեք,
տարեք դեպի արթնացում:
Մեր տան փլված տանիքին
դուք ձեր ձագերը հանեք,—
Աղավնիներ իմ անմեղ,
աղավնիներ իմ մաքուր:





ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Մի ցավոտ հանդիպում

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հայը աշխարհում որտեղ էլ որ լինի՝ մի ներքին պահանջով փնտրում է հայրենակցի: Երբ գտնում է, անչափ ուրախանում է: Բայց այդ փնտրելու և ուրախանալու մեջ կա մի դառը շեշտ, որը հավանաբար գալիս է մեր ողբերգական պատմությունից: Յուրաքանչյուր հայ մարդ ունեցել է կորուստներ, և ահա մի օտար երկրում միմյանց հանդիպելիս նրանք ունենում են սեփական կորուստները գտնելու վայրկենական երջանկությունը: Վայրկենական, որովհետև հաջորդ պահին իսկ հոգիդ լցվում է անասելի ցավով...

Մենք շատ «հարուստ» ենք գաղութնե-

րով։ Ես չակերտներով եմ գրում հարուստ բառը, որովհետև այդ դեպքում շատությունը հարստություն չէ։ Ունենք ռուսահայ, բուլղարահայ, պոլսահայ, եգիպտահայ, ռումինահայ, անգլահայ, ամերիկահայ, պարսկահայ գաղութներ, 1915-ի ցեղասպանությունից հետո առաջացան ուրիշ գաղութներ, հետո էլի ուրիշներ... Նորերի հետ շատ հին գաղութներ վերացան՝ իրենց ապաստանած երկրներում թողնելով մշակույթի ու արվեստի գեղեցիկ հետքեր։ Հետքեր... Որքան էլ գեղեցիկ լինեն, այնուամենայնիվ տխրալի են ու հոգի կեղեքող։ Որովհետև հետքեր են, կենդանությունից զուրկ, պայքարը դադարեցրած, պատմության փակ էջեր են։ Հետքեր են, ինկապես հետքեր...

...Հնդկաստանի Մադրաս քաղաքում եմ՝ զբոսաշրջիկների մեր խմբի հետ։ Ես գիտեմ, որ այստեղ կան մեր հետքերը... Հարցնում եմ հնդիկ ուղեկցորդուհուն, թե գիտե՞ս արդյոք տեղի հայկական եկեղեցու մասին։ Նա որոշակի ոչինչ չի ասում, իհարկե լսել է, բայց թե որտեղ է գտնըվում, ինչ վիճակում է՝ չգիտի։ Չիմանալու համար մեղավոր ժպտում է։ Այնուհետև ինչ-որ մեկի հետ երկար-բարակ խոսելուց հետո մոտենում ասում է՝ օ քեյ։ Այսինքն թե՝ տեղը իմացա, եկեղեցին կարգին վիճակում է, եթե ուզում եք՝ կարող ենք ազատ ժամի այցելել...

Եթե ուզում եք... Իհարկե ուզում եմ։ Փափագում եմ, միսիս...

Գնում ենք։ Ավտոբուսը մոտենում է օվկիանոսին, կանգ առնում ափից քիչ հեռու։ Այստեղ անռելի, անծայր, անվախճան շուկայի մուտքն է, շուկա, որը լըցված է բառացիորեն ամեն ինչով՝ իրար վրա, խառնիխնթոր, աղմուկ-աղաղակի, վազվզոցի, ծխի, մրի, շփոթության, խընդրանք-աղաչանքի, ծուլության ու մուրացիկության բազմերանգության մեջ։

Շուկայի հենց մուտքի մոտ կարդում եմ փողոցի անունը՝ Արմինիան սթրիթ՝ Հայկական փողոց։ Ցուցանակի մոտից ձգվում էր մուրացիկների մի երկար շարք. թշվառները ձեռքների ճմրթած թիթեղյա ամանները թափահարում էին՝ զնգզնգացնելով միջի գրոշները, հետո էլ ինչ-որ երգանձայն բաներ ասում։ Ինձ թվաց՝ այդտեղ հավաքվել են աշխարհի բոլոր խեղված ու դժբախտ մարդիկ։ Նըրանց թիկունքում մեր եկեղեցին էր. Ս. Աստվածածինը։ Եկեղեցու լուսաճակատ դեմքը մեր աչքին ցոլաց առաջին իսկ պահին, հարյուրավոր շենքերի խայտաճամուկ լաբիրինթոսի մեջ։ Կողքին անգլիացիների կառուցած կաթոլիկ եկեղեցին էր, որի դռանը անասելի հերթ էր՝ ժամերգությանը մասնակցելու համար։ Իսկ մեր եկեղեցին փակ էր։ Այցելու չուներ։ Ցուցանակը ազդարարում էր, որ բացվելու ժամը մոտ է։ Իրոք, նշված ժամին եկավ մի բարձրահասակ, տարեց մարդ, բաց արեց գավթի երկաթյա դարպասը։ Կապուտաչյա մարդ էր, անունը՝ Գրիգոր, հայր Գրիգոր։ Նա շատ հուզվեց՝ միանգամից երեսուն հայերի տեսնելով ու լաց եղավ։ Ասաց՝ շատ վաղուց եկեղեցին այսքան այցելուներ չի ունեցել։ Պարսկահայ էր, խոսում էր անգլիական առոգանությամբ։ Փութաջան մարդ էր հայր Գրիգորը։ Ձնայած առաջացած տարիքին՝ մեր առջևն ընկած արագ-արագ առաջնորդում էր տեղից-տեղ, բացատրում ու արտասվում։

Իմացանք, որ Մադրասում ինքը միակ հայն է, եկեղեցին միայն զատկի օրերին ունենում է հինգ-վեց հոգի այցելուներ, որոնք ժամանում են Կալկաթայից։ Մնացած ամբողջ ժամանակ ինքը մենակ է այս պատերի մեջ։ Ամեն օր նշված ժամին բացում է եկեղեցին, իր անգլուհի կնոջ հետ խնամում են ծառերն ու թփերը, վերցնում փոշին... Հետո կինը գընում է տուն (եկեղեցու դիմաց), ինքը մնում է։ Մնում՝ ի՞նչ է անում։ Վերցնում է վրձինն ու Արարատ է նկարում։ Նկարել էր մոտ հազար հատ նույն նկարից։ Երևի նույնքան էլ Էջմիածնի Մայր տաճար էր նկարել։ Անվարժ ձեռք է, բայց դե ինչ, նկարում է, որ գոնե այդպես Հայաստանում գտնվի, կարոտն առնի, խոսի հայերեն, ուրախանա... «Մարդ եմ, չէ՞,— ասաց,— կխելագարվեմ»։

Նկարել էր առանց Արարատ լեռը տեսնելու, առանց Էջմիածնում լինելու։ Չորս տղա ունի, որոնք Եվրոպայում կրթություն էին ստացել, ամուսնացել օտարազգի կանանց հետ, մնացել այն կողմերում, կարծեմ՝ Հոլանդիայում ու Անգլիայում։ «Կարծեմ»-ը ինքն ասաց ու ձեռքը թափ տվեց։ Ապա կանգնեց խնամքով հարդարված ծաղկուն թփերի մոտ, ձեռքով շոյեց տերևներն ու ասաց.

— Տիկինն է խնամում։ Նա թեպետ անգլուհի է, բայց հավատարմորեն ծառայում է մեր եկեղեցուն, շատ նվիրված է իր գործին։ Նա տղաներիս մայրը չէ։ Տղաներիս մայրը... Այդ մասին ինչո՞ւ

հիշեցրիք, անարժան կին էր…
Հայր Գրիգորը ննկատելիորեն զայրացավ, շարժումները դարձան կտրուկ, ջղային: Մեծ-մեծ քայլերով առաջ անցավ ու շատ բարձր, գրեթե գոռալով սկսեց իր հաջորդ բացատրությունը.
— Մեր եկեղեցու տարածքը ժամանակին շատ մեծ էր, անգլիացիները հրդեհեցին, շատ արժեքավոր բաներ կրակի ճարակ դարձան: Տեսնո՞ւմ եք այս ածխացած բներով ծառերը, այդ օրերից են: Հետո իշխանությունները տարածքի մեծ մասը առան մեզնից, մնաց այն, ինչ տեսնում եք:
Իսկ այն, ինչ տեսնում էինք՝ մի փոքր բակ էր:
Ծառուղով առաջացանք դեպի այն մասը, ուր ննջեցյալների հանգստարանն էր: Եկեղեցու սպասավորներն էին, գաղութի երևելի մարդիկ… Նրանց մեջ ինձ ծանոթ էր Հարություն Շմավոնյանը, «Ազդարարի»՝ մեր առաջին լրագրի խմբագիրը: Համակվել էինք սրբազան երկյուղածությամբ: Մեր առջև ոչ թե սովորական շիրիմ էր, այլ հայ մտածողի, ազատագրական գաղափարների տեր քաջազնն մի գործչի ոգեղեն գոյություն-ներկայությունը: Մենք հաղորդակցվում էինք միմյանց մի ներքին, հոգևոր երկխոսությամբ, մենք՝ որ եկել էինք Հայրենիքից և նա, որ երազում էր երբևէ ունենալ անկախ Հայրենիք…
Անցանք ժամատուն: Նստարանները փայլում էին մաքրությունից: Այնտեղ զով էր, մեր եկեղեցիներին հատուկ հաբազատ զովությունն ու խորհրդավորությունն էր իշխում: Պատերը լի էին հայոց պատմությունն ու հայոց ճարտարապետությունը ներկայացնող նկարներով: Գրապահարաններում հին գրքեր էին, որոնց երևի շատ վաղուց ընթերցողի ձեռք չէր դիպել… Դրսի սովորական շոգից հետո քիչ դադար առանք ըղձալի զովության մեջ՝ ունկնդրելով հայր Գրիգորի պատմությունները…
Ժամատունը մի փոքրիկ Հայաստան էր աշխարհի հեռավոր անկյունում, ավելի ստույգ՝ պատմական Հայաստան էր, ուր ապրում էր մեր անցյալը վեհասքանչ կերպարանքով, ազնիվ գործերով ու մաքառումներով: Ամեն ինչ հիշատակ էր, նշխար էր ու մասունք: Դրսի ամեհի ժխորից ոչ մի ձայն չէր թափանցում այնտեղ, և ներկան ասես գոյություն չուներ: Ներկան խեղճ ու տարօրինակ, համառ ու փխրուն հայր Գրիգորն էր և մենք էինք, որ պիտի գնայինք արդեն, և վաներն էր, որ աղոթող չուներ:
Բակում ասես ոչ թե շոգ էր, այլ արևի հալոցք: Խուլ բվվոցի պես հասնում էին շունչայի ձայները:
Բարձր աշտարակից կախված էին եկեղեցու զանգերը, լուռ ու խոկուն զանգերը: Պարանները ցածում ագուցված իրար, կապված էին պատին: Զանգակատան վրա իջել էին հարյուրավոր աղավնիներ:
— Հայր Գրիգոր,— դիմեցի ծերունուն,— կարելի՞ է զանգերը հնչեցնել:
— Կոչնակե, տղաս, ինչո՞ւ չէ:
Ես իջեցրի պարանները, սկզբում անվստահ, երկյուղած, ապա վստահ ու մոլեգնությամբ սկսեցի զանգերը հնչեցնել: Առաջին զանգահարությանը աղավնիները փռռալով օդ ելան՝ գույնզգույն նամակների պես, զանգակատան կիսաբաց ափի միջից… Զանգերի քաղցր հունչը սքանչություն տարածեց շուրջբոլորը: Գնալով զանգահարությունը դարձավ ավելի ու ավելի ուժգին: Ես ձգում էի պարաններն ու ասում.
— Այս զանգահարումը ձեր հոգուն եմ ընծայում, այս հողի մեր ննջեցյալներ:
Ապա ձգում էի ու ասում.
— Այս մեկն էլ քեզ համար, աշխարհին իջնող խաղաղ իրիկուն:
Ապա ձգում էի ու ասում:
— Այս մեկն էլ քեզ համար, Մադրաս քաղաք, որ օվկիանոսի ափին նման ես շողշողուն մարգարիտի:
Ապա ձգում էի ու ասում:
— Այս մեկն էլ ձեզ համար, մեր եկեղեցու պատերի տակ ապաստանած այս քաղաքի զուրկեր, հաշմանդամներ, խեղճեր ու պարտվածներ:
Ապա ձգում էի ու ասում:
— Այս մեկն էլ քեզ համար, հայր Գրիգոր, մենակ մնացած հայ, որ ողբում ես քո շուրջբոլորի ամայության համար և տանջվում ես այն մտքից, թե արդյոք կգտնվի՞ մեկնումեկը, որ քեզ փոխանորդ լինի՝ եկեղեցուն տիրություն անի:
Մեր հետևից դարպասը չփակվեց: Հայր Գրիգորը՝ շեմին կանգնած՝ մեզ ուղեկցում էր հայացքով ու սրտով: Նրա դեմքը երկար ժամանակ երևում էր խայտաճամուկ ամբոխի մեջ, և խառնակուտակ շենքերի միջից նայում էր հայոց լուսաճակատ եկեղեցին իր առաքելական վճիտ հայացքով:



# ՄԱՐԻՆԱ ՑՎԵՏԱԵՎԱ

## МАРИНА ЦВЕТАЕВА

### ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

(Զմեռ, 1937/38 թվական)

**Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ**

Սիրելի երեխաներ,

Ես երբեք չեմ առանձնացնում, ես մըտածում եմ, որ դուք էլ մեզ նման մարդ եք, կամ մարդ չեք: Բայց ասում են, թե դուք հատուկ տեսակ եք և դեռևս ենթակա եք ազդեցության:

Ահա ինչու.

— Երբեք զուր տեղը ջուր մի թափեք, որովհետև այդ իսկ պահին ջրի բացակայության պատճառով մարդ է մեռնում անապատում:

— Եթե ես ջուրը չթափեմ, նա ինչպե՞ս կստանա այդ ջուրը:

— Չի ստանա, բայց աշխարհում անհամատ մի հանցանք պակաս կլինի: Ահա ինչու, երբեք հացը դեն մի գցեք, այլ· ընդհակառակը, ոտքի տակ տեսնելիս վերցրեք, դրեք մոտակա ցանկապատին, քանի որ կան ոչ միայն անապատներ, այլև թշվառ թաղամասեր, որտեղ մեռնում են քաղցից: Միգուցե այդ հացը նկատի սովյալ մեկը, և նրա համար ավելի հեշտ լինի ցանկապատի վրայից վերցնել, քան գետնից:

Երբեք մի վախեցեք ծիծաղելիից և եթե որևէ մարդու տեսնում եք ծիծաղելի դրության մեջ, աշխատեք նրան դուրս բերել այդ վիճակից, իսկ եթե դա անհնարին է, նետվեք դեպի այդ մարդը, ինչպես ջուրն են նետվում, և հիմար վի-

ճակը կկիսվի երկուսի միջև, յուրաքան-չյուրին՝ մի կես: Համենայնդեպս, ծիծաղելին մի տեսեք ծիծաղելիի մեջ:

Երբեք մի ասեք, թե բոլորը այսպես են անում, բոլորը միշտ վա՛տ են անում, եթե այդքան համոզված եք ... երան ոչ եք վկայաբե-րում: (Կան բազմաթիվ օրինակներ, որ հիմա եմ թողնում): «Բոլորն» ունի երկրորդ անուն՝ ոչ ոք, և ամենևին չունի դեմք. պակասություն է: Իսկ եթե ձեզ ասեն. «Այդպես ոչ ոք չի անում» (այդպես չի հագնվում, չի մտածում, և այլն), պատասխանեք. «Իսկ ես ո՛վ եմ»:

Երբեք մի պատճառաբանեք. «նորաձև չէ», այլ միայն՝ «նուրբ չէ»:

Ծատ մի բարկացեք ծնողների վրա, հիշեք, որ նրանք դուք եք եղել և դուք լինելու եք նրանք:

Բացի այդ, նրանք ձեզ համար են ծնող, իրենց համար «ես» են: Մի բավարարվեք նրանց միայն ծնող համարելով: Ծնողներին (ձեզ) մահվան մի դատապարտեք քառասուն տարեկանից առաջ, իսկ հետո արդեն ձեռք չեք բարձրացնի:

Փողոցում քար տեսնելիս, հեռացրեք, պատկերացրեք, որ այդ դուք եք վազում ու վայր ընկնում:

Տրամվայում մի ամաչեք ձեր տեղը մեծին զիջելուց: Ամաչեք չզիջելուց:

Նյութապես ձեզ մի առանձնացրեք ուրիշներից: Ուրիշները նույնպես դուք եք, նույն դուք-ն եք (բոլորն էլ ուզում են ունել, քնել, ուտել և այլն):

Մի ցնծացեք թշնամուն հաղթելիս: Բավական է հաղթանակի գիտակցությունը: Հաղթելուց հետո ձեռք մեկնեք:

Ուրիշների ներկայությամբ հեգնանքով մի խոսեք մերձավորի մասին (նույնիսկ սիրելի կենդանու մասին. ուրիշները կգնան, յուրայինները կմնան):

Կերակուրը վերջացնելիս, ափսեն թեքեք ձեր կողմը, ոչ թե ձեր կողմից դեպի ուրիշը, որպեսզի հակառակ դեպքում կերակուրը թափվի ոչ թե ափոցին կամ դիմացինի վրա, այլ սեփական ծնկներին:

Եթե ձեզ ասեն՝ «Դա ռոմանտիզմ է», հարցրեք. «Ի՞նչ է ռոմանտիզմը», և կընկատեք, որ ոչ ոք չգիտի, որ մարդիկ բառը բերանն են առնում (նույնիսկ կըռվում դրանով, նույնիսկ դրանով թքում ձեր ճակատին), բայց իմաստը չգիտեն:

Երբ վերջնականապես համոզվեք, որ չգիտեն, ինքներդ պատասխանեք անմահ Ժուկովսկու խոսքով. «Ռոմանտիզմը— հոգի է»:

●●●

**Քեզ քարից են արարել և կավից՝ նրան,**
**Իսկ ես շողում եմ ահա՝ մաքուր-արծաթե,**
**Ինքը խարդավանքն եմ ես՝ անվամբ-**
**Մարինա,**
**Ծովի փրփուր եմ թեթև:**

**Նրանց, ովքեր արյուն են ու միս են ու կավ,**
**Նրանց դագաղ է սազում, շիրմաքար ու**
**հող...**
**Իսկ ես՝ ծովում մկրտված, թռիչքում լոկ կամ.**
**Անվերջ, անդուլ փշրվող...**

**Եվ ամեն սրտի միջով, ուռկանի ամեն**
**Կթափանցի խոլական կամքս, ինձ նայիր,**
**Օ, կարո՞ղ էր, գանգուրներն այսքան**
**անխոհեմ,**
**Ստեղծել աղն երկրային:**

**Դիպչելով ձեր ծնկներին, փլվում եմ ահա**
**Եվ հարություն եմ առնում ամեն ալիքում,—**
**Կեցցե փրփուրը ծովի, փրփուրը անմահ,**
**Կեցցե փրփուրը մաքուր:**



Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

## Փափագ

**Խրախճանք է մեր սիրտն անվերջ տենչում,**
**Չի վհնում երբեք, կյանքներս վկա,**
**Եվ ինչո՞ւ սակայն, աշխարհում ինչո՞ւ**
**Հագեցում չկա:**

**Սուտակներ, վարդեր ու պայծառ դեմքեր,—**
**Անհույս խամրում են, խամրում, սիրելիս,**
**Գրքերի տենդով վառվող սիրտը մեր**
**Խելքի չի գալիս:**

**Հարավն էլ ահա՝ մեզ չարչարող տապ...**
**Հանդուգն էր տղան... խնդրում է հիմա...**
**Ինչո՞ւ, ինչի՞ց է, որ այս լուսնի տակ**
**Հագեցում չկա:**

ՄԱՐԻՆԱ ՑՎԵՏԱԵՎԱ



●●●

Ճախրանքի սովոր հոգուդ համար
Էլ ի՞նչ խրճիթ ու էլ ի՞նչ պալատ,
Էլ ի՞նչ Չինգիզխան, ի՞նչ Ավերում,
Երկու թշնամի կա աշխարհում,
Երկու երկվորյակ—արյունակից.
Սովյալի սովը
Եվ կշտությունը կշտացածի:

●●●

Իմ քերթվածները՝ գրված այնքան վաղ,
Երբ, որ պոետ եմ, դեռ չգիտեի,
Ցայտող ջրերի շիթեր են չքնաղ,
Ցոլքեր հրթիռի,

Փոքրիկ դևեր են՝ տաճար են լցվել,
Որտեղ թմբիր է ու խունկ են ծխում,
Իմ քերթվածներում, որ չեն ընթերցվել—
Կյանքն է բաբախում,

Մի անկյուն նետված, փոշոտ, անանուն
(Ոչ ոք չի առնում, ոչ ոքի պետք չի)
Իմ քերթվածների, ինչպես թանկ գինու,
Ժամը կհնչի:

Թարգմանեց ԱՎԱԳ ԵՓՐԵՄՅԱՆԸ



# Ազնվություն

(Կիրովականի Ստ. Զորյանի անվան դպրոցի աշակերտների շարադրություններից)

ԱՐԹՈՒՐ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Օրերի վազքի հետ, երթի մեջ,
Դու, սիրտ իմ, տրոփիր քանի կաս՝
Իմ երգի հոգսերով ծանրաբեռ:
Երբ հոգնես ու լռես, չափսոսաս,
Կհյուսվեմ արևի շողերին,
Կդառնամ մշուշի ճերմակ քող
Եվ խառնված անձրևի շիթերին,
Կտեղամ, կլվամ դաշտ ու հող:

●●●

Հեռավոր, մենավոր աստղի պես
Գիշերը կակոսեմ, կշողամ,
Եվ ինչպես ուռենի լուռ ու հեզ,
Ջրերին կարոտով կդողամ...
Կարթնանամ լոկ գարնան մի ջինջ օր՝
Բնության զարթոնքի այդ պահին,
Ծամփեզրի կակաչի ալ արտից
Անխռով կնայեմ աշխարհին...

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Ես ինքս ինձ հաճախ հարց եմ տալիս. ախր ինչո՞ւ, երբ կա ազնվությունը, հաճախ կյանքում տեղ են գտնում նաև այնպիսի նողկալի արարքներ, ինչպիսիք են գողությունը, կաշառակերությունը, սպանությունը, խաբեբայությունը...

1983 թ. մայիսի ինն էր: Դեռ նոր էինք պառկել քնելու, երբ լսեցի մորս աղեկտուր ճիչը: ... Վառվում էր մեր տունը... Մեր բազմանդամ ընտանիքը մատնըվել էր վտանգի: Կարճ ժամանակում հավաքվեցին մեր դրկիցները: Մինչև հրշեջ մեքենայի գալը, տունը համարյա մոխրակույտի վերածվեց: Մեր ընտանիքը մնաց անօթևան: Բայց մեր թաղամասի բնակիչներից մեկը, որին նույնիսկ չէինք ճանաչում, մեզ իր տանը ապաստան տվեց: Անցել են օրեր, ամիսներ և տարիներ, բայց այդ խառնաշփոթ վիճակը և այն կնոջ ազնիվ արարքը երբեք չի մոռացվի:

Այո, շատ-շատ են նման ազնիվ արարքները, որոնք ոգևորում են ժողովըրդին, մեկ անգամ ևս հաստատում, որ իզուր չեն մեր պապերը մարտնչել հայրենիքի ազատության համար, որովհետև կան իրենց արժանի փոխարինողները, որոնք գեղեցկացնում են կյանքը և լցնում անուշ բերկրանքով:

Եվ, մենք, անող սերունդներս, պետք է

անենք այնպես, որ միայն ու միայն լավ արարքներ կատարվեն մեր շրջապատում, որպեսզի մեզ դաստիարակած մանկավարժները, ծնողները բաց ճակատով քայլեն հասարակության մեջ:
Եվ ես կոչ եմ անում իմ հասակակիցներին. «Սիրելի քույրեր, եղբայրներ, սիրեցեք ազնվությունը, արդարությունը, խորշեցեք այն ամենից, ինչը չարիք է բերում հասարակությանը:

**ՄԱՐԻՆԵ ԲՈՒԴԱՂՅԱՆ**
5-րդ դաս.

իր մարտական ընկերների հանձնարարությունները կատարելով: Նա միայն վերջին օրը և միայն մի պահ կարողացավ տեսնել մորը:
Նա իր ազնիվ արարքով բարձրանում է մեր աչքին: Եթե դուք ուզում եք որևէ ազնիվ գործ կատարել, որևէ լավ ու բարի բան անել ուրիշի համար, արեք այնպես, որ ոչ ոք այդ մասին չիմանա, թող դա լինի ձեր գաղտնիքը:

**ԱՐՏԱԿ ԱՎԵՏԻՍՅԱՆ**
8-րդ դաս.

Ահա այն ամենամեծ ճշմարտությունը, որին պետք է ձգտի յուրաքանչյուր քաղաքակիրթ ու բանական մարդ:
Իսկ ո՞րն է այդ ազնվությունը, որի մասին անընդհատ խոսվում ու գրվում է:
Լինել ճշմարտախոս, շիտակ, ինքնավերլուծության ենթարկել սեփական արարքները, կարեկից և ուշադիր լինել ընկերոջ նկատմամբ: Ամենադժվար ու ամենածանր պահին չլքել ընկերոջը, այլ դառնալ նրան զորավիգ, պաշտպան: Ահա թե որն է այսօրվա մարդու համար ամենահիմնական պատվիրաններից մեկը:
Կարդացածս գրքերի մեջ ամենաազնիվն ու իմ ամենասիրելի հերոսն է Պավել Կորչագինը: Անսահման ու անպարփակ է նրա հոգին, ազնիվ ու շիտակ, հայրենասեր, մարդկային: Նա ուժերի գերլարումով հաղթահարում է անդամալուծությունը և անգամ անկողնուն գամված մտածում է մարդկությանը օգտակար լինելու մասին: Նա կույր վիճակում վեպ է գրում, որտեղ ներկայացված է իր և իր հեղափոխական ընկերների կյանքը, նրանց նվիրաբերումը հեղափոխությանը:
Ես ցանկանում եմ նմանվել Պավել Կորչագինին, լինել նրա պես ազնիվ, շիտակ, անձնազոհ:

**ՎԱՐԴԱՆ ԱՂԱՋԱՆՅԱՆ**
6-րդ դաս.

Տասնյակ հազարավոր դոնորներ տվել են իրենց արյունը, որպեսզի փրկեն իրենց միանգամայն անծանոթ մարդկանց կյանքը, սակայն չի կարելի մտածել, որ ազնվությունը միայն հատուկ դեպքում է հանդես գալիս: Օրինակ, «Բալլադ զինվորի մասին» կինոնկարի հերոս Ալյոշան, որը պատերազմի ժամանակ մի քանի օրով տուն գալու թույլտվություն է ստանում: Արձակուրդի օրերը սպառվում են

Կյանքը հարուստ է բարության ու ազնվության դասերով: Յուրաքանչյուր օր, յուրաքանչյուր ժամ մենք ականատեսն ու լսողն ենք լինում այդ դասերի: Դրանք եկել են պատմության խորքերից և այդ պատմության նման էլ հին ու նոր են: Ազնվության մասին մեզ ասում են յուրաքանչյուր քայլափոխի, ասում են մեր ուսուցիչները, ծնողները: Իսկ ի՞նչ է ազնվությունը, ասել միայն ճշմարտությունը, սուտ չխոսել և վե՞րջ: Ինձ թվում է՝ ոչ: Ազնիվ լինել կարող են ուժեղ կամքի տեր, բարի, քաջ մարդիկ: Ազնիվ են բոլոր հայրենասեր մարդիկ: Մենք անցել ենք հերոս պիոներներ Վալյա Կոտիկի, Մարատ Կազեի, Լյոնյա Գոլիկովի, Զինա Պորտնովայի կատարած սխրագործությունների մասին, ցավ ու ափսոսանք ապրել նրանց զոհվելու համար: Նրանք մնացել են հավերժ պիոներներ, և նրանց ապրած կյանքը ազնիվ օրինակ է շատերի համար:
Մեր ուսուցիչները մեզ պատմել են Հ. Ավետիսյանի, Ն. Ստեփանյանի, Ա. Մատրոսովի, Ա. Մերեսևի մասին: Նրանք հերոսներ են, մարդիկ, որոնք հանուն հայրենիքի տվել են ամեն ինչ: Ազնվություն մենք սովորում ենք նաև գրքերից: Ես շատ եմ սիրում կարդալ, և առանձնապես՝ հեքիաթներ: Հեքիաթներում միշտ բարին ու ազնիվը հաղթում են:
Ես ուզում եմ գրել նաև Ծ. Կարապետյանի մասին: Ուրախ եմ, որ այդ լավ ու մեծ մարդու հայրենակիցն եմ: Ես գիտեմ, որ նա շատ է սիրում երեխաներին: Գիտեմ, որ փրկել է քսան մարդկային կյանք: Նրան ճանաչում են ամբողջ աշխարհում:
Տեսնո՞ւմ եք, ազնիվ լինել չի նշանակում միայն ճիշտ խոսել: Նշանակում է

# ԴԻՄԱՆԿԱՐ

Կարո՞ղ եք ասել, թե ովքեր են այս դիմանկարների հեղինակները և ինչպես են կոչել իրենց աշխատանքները:







լինել նաև ընկերասեր, անձնազոհ, հայրենասեր և բարի:

ԼՈՒՍԻՆԵ ՋԱՂԱՑՊԱՆՅԱՆ
5-րդ դաս.

Երեխան ծնվում է, ազնվությունն էլ նրա հետ է ծնվում, նրա հոգին անաղարտ է, ազնիվ: Բայց մեծանալով, ազնըվությունը չպետք է մարի: Ոչ: Գեղեցիկ է այն մարդը, որը ունի ազնիվ ու վսեմ հոգի, ում խորթ են կեղծիքն ու սուտը, քծնանքն ու շողոքորթությունը:

Փորձենք գոնե մեկ անգամ սուտ խոսել կամ մի անազնիվ արարք կատարել, կզգանք, որ մեր խիղճը տանջվում է դըրանից: Նշանակում է ՝պետք է միշտ ազնիվ լինել, լինել պարտաճանաչ, ընկերասեր: Իսկական հայրենասեր է նա, ով առաջին հերթին ազնիվ է ու բարի:

Ազնվությունը ձևավորվում է նաև ընտանիքում, քանի որ երեխան իր ծնողներից ընդօրինակում է նրանց բնավորության գծերը: Երբ ծնողը ամեն ինչ ազնվորեն է անում, երեխան դա շատ շուտ զգում է և ընկալում:

Մի՞թե գեղեցիկ չէ, երբ մարդ ազնիվ է խոսում, չի կեղծում: Ազնվությունը մարդուն մղում է գեղեցիկ ու վսեմ գործերի:

Երջանիկ է այն մարդը, ում հոգին ազնիվ է, խիղճը՝ մաքուր:

ԱՐԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ
5-րդ դաս.

«Ազնվությունը զարդարում է ցանկացած կոչումը»

Ֆ. ՇԻԼԼԵՐ

Յուրաքանչյուր մարդ պետք է ազնիվ լինի: Սա մի գիծ է, որով զարդարվելը պատիվ կբերի յուրաքանչյուրին: Ազնիվ մարդկանց բոլորն են սիրում:

Միշտ է նկատել ժամանակին մեծ հեղափոխական-դեմոկրատ Օգարյովը. «Ազնիվ մարդ լինել ամեն մեկի համար՝ նշանակում է ապրել ընդհանուրի բարօրության համար, անձնական շահը զոհել ընդհանուրին»: Մենք՝ աշակերտներս էլ պետք է ազնիվ լինենք, չէ՞ որ ամեն ինչ փոքրուց է դաստիարակվում: Կյանքում ազնվությունն ու ճշմարտությունը քայլում են ձեռք-ձեռքի, հարազատ եղբայրների նման:

«Մեծագույն վիրավորանքը, որ կարելի է պատճառել ազնիվ մարդուն, նրան անազնվության մեջ կասկածելն է»:

Վ. ՇԵՔՍՊԻՐ

ՀԱՍՄԻԿ ԲԵԿՉՅԱՆ, 5-րդ դաս.



Լուսանկարը՝ ԹԱԹՈՒԼ ՍԱՐԻԲԵԿՅԱՆԻ

Ոչ բոլորն են, որ ազնիվ են ու անկեղծ, Ես ճանաչում եմ այդպիսի մարդկանց և երեխաների: Երեխաները շատ հաճախ են խաբում իրենց ծնողներին, ուսուցիչներին և ընկերներին: Եթե ժամանակին ուսուցիչներն ու ծնողները չզբաղվեն նրանց դաստիարակության հարցով, հետագայում նրանք լավ մարդ չեն դառնա: Եթե երեխաներն այսօր խաբում են իրենց ընկերներին խաղում, ապա վաղն էլ կըխաբեն աշխատանքային ընկերներին՝ աշխատանքի վայրում:

**ԱՐՄԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ**
**4-րդ դաս.**

Ազնիվ լինելը մեծ շնորհ է, առաքինություն: Ազնիվ մարդու հոգին զերծ է հանցավոր մտադրություններից: Ազնիվ մարդիկ մաքուր խիղճ ունեն: Իսկ երբ մարդու խիղճը մաքուր է, նա ներքնապես հանգիստ է, խաղաղ:

Ասում են՝ ազնվությունը բարություն է ծնում:

Ազնիվ մարդիկ ամենալավ մարդիկ են: Նրանք են, որ մարտնչել են ու մարտընչում են անարդարությունների, բռնությունների, անազնվությունների դեմ: Ազնվությունը լուսատու փարոսի նման պիտի լույս տա մարդու կյանքի ուղուն:

Եթե մեր երկրում բոլորն ազնիվ լինեին, առօրյա կյանքը ավելի հեշտ ու հաճելի կլիներ, մարդիկ երջանիկ կլինեին, անարդարություններից վրդովվածներ չէին լինի և ընդհանրապես լավը մեր կյանքում կշատանար:

Մեծ գրող Թումանյանն իր «Գիքորը» պատմվածքում նկարագրում է այսպիսի դեպք: Գիքորը շուկայում նկատում է գետնին ընկած մի դրամապանակ և ցույց տալիս Բազազ Արտեմին, Բազազ Արտեմը նայում է չորս կողմն ու գաղտագողի վերցնում դրամապանակը:

Թումանյանը այդ դրվագում հակադրության մեջ է դնում Գիքորի գյուղական անարատ ազնվությունը և Բազազ Արտեմի անազնվությունը:

Ազնվության գաղափարի հետ են կապված այնպիսի մարդկային հատկություններ, ինչպիսիք են, օրինակ, պատիվը, խիղճը, արժանապատվությունը, կամքը, անկեղծ սիրելու ունակությունը, անձնազոհությունը, հայրենասիրությունը:

**ԱՐՏԱԿ ԷԼՕՂԼՅԱՆ**
**7-րդ դաս.**

**ՀՐԱՉՅԱ ՍԱՐՈՒԽԱՆ**

## Ծերունու գանգատը

Մի տարի է օրը կարծես,
Տարին կարծես օր լինի.
Ինչքան կուզես՝ արթուն մնա,
Ինչքան կուզես՝ խոր քնի:

Եվ օրեցօր, տարեցտարի,
Դողդոջ եղեգ եմ դառնում...
Եվ անծանոթ եղեգնուտում
Երազիս մեջ արթնանում:

## Սգավոր ագռավը

Ագռավի ձագ էր կարկտահարված.
Կամրջատակի ջուրն էին գցել..
Հետո մոռացա, ինչպես պատահած
Շատ բաներ էի արդեն մոռացել:

Բայց այս իրիկուն, երբ թմփոց լսվեց
Կամրջին մոտիկ, հենց բարդենու մոտ,
Փշաքաղ սիրտս ահերով լցվեց...
Շուրջս նայեցի, հետո՝ դեպի օդ:

Ագռավի բույնը սևին էր տալիս...
Եվ գլխի ընկա՝ թևաբախ էր դա:—
Գուցե երազում թևին էր տալիս
Էն ձագուկի հետ ագռավը հիմա...

Էլ ո՞վ չէր արդեն իր միտը բերի
Անցած-գնացած օրերն էն աշնան,
Դեսուդեն ընկնող էն ագռավների
Պտույտներն անօգ, խեղ ու անդաշնակ:—

Կոնչյունի հետ մղկտոց հեղում
Ու փնտրում էին կորած ձագին այն...
Է՜, անցյալից էր բարդին իր տեղում,
Ագռավազույգը՝ աշնանից միայն:

Հետո սգավոր այդ ագռավներից
(Ո՞րն էր՝ չքացավ) մեկն էր երևում.
Մերթ քարի նման նետվում էր վերից,
Մերթ աղեկտուր լալիս վերևում...

Գիշեր է ձյունոտ: Ու ինձ թվում է՝
Լուսինն ուր որ է պիտի կռավի...
Ու էն բարդենուց դեռ տարածվում է
Թևաբախումը քնած ագռավի:



# Գրիգոր Զոհրապ
## 1861—1915



Դաշնակ մըն է հոգիս լեցուն
Նվագներով՝ շատոնց լռած,
Որ մատիդ ծայրը դպչելուն
Կսարսռա, կերգե հանկարծ:

Երգեր մոռցուկ, երգերս իմ հին,
Խոր քուներնին թողածի պես,
Որ շփելով գոց աչվընին
Կանցնին կարգով առա դեմես

Նախ երգերը օրորոցիս,
Որոնցմով մայրս զիս մեծցուց,
Ու խոլ երգերն իմ փողոցիս
Զոր տակավին գիտեմ բերնուց:

Վերջը, սիրո երգերը, որ
Կես մը իրավ, կես մը կատակ,
Նետեցի չորս դին ամեն օր,
Ծաղկանց ըման ոտքերու տակ:

Վե՜րջը… վերջը բոլոր զվարթ
Այդ երգերուն—դադարը մեծ:
Լռությունը, զոր մինչև ցարդ
Քենե զատ ոչ ոք վրդովեց:



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# Քրիստոնեության պաշտոնական ընդունումը Հայքում: Ագաթանգեղոսի պատմությունը

Տրդատ III-ը Մեծ Հայքում թագավորել է 298—330 թվականներին: Նրա օրոք՝ 301 թվականին, քրիստոնեությունը Հայաստանում պաշտոնապես ճանաչվեց որպես հայերի կրոն: Այդ ժամանակաշրջանի մասին մի քանի գրավոր աղբյուրներ կան, բայց հիմնականը Ագաթանգեղոսի «Հայոց պատմությունն» է: Հին ժամանակներից եղել են այդ գրքի ոչ միայն հայերեն, այլև հունարեն, արաբերեն, վրացերեն տարբերակները:

Ագաթանգեղոսն իր գրքի սկզբում գրում է. «Արդ հրաման է հասել ինձ՝ Ագաթանգեղոսիս, որ մեծ Հռոմ քաղաքից եմ, կրթված հայրենի գիտությամբ, սովորել եմ լատիներեն ու հունարեն, ուսանել դպրությունը...»: Իսկ ի՞նչ հրաման է ստացել այդ ուսյալ մարդը՝ «Արդ՝ ինձ հրաման է հասել Տրդատ մեծ արքայից՝ կարգով գրի առնել ժամանակների դեպքերը»:

Սա նշանակում է, որ Ագաթանգեղոսը Տրդատ III-ի ժամանակակիցն է եղել՝ 4-րդ դարի հեղինակ: Այդ գրածին չհավատալու հիմք չունենք: Բայց փաստ է նաև, որ Ագաթանգեղոսի գրքում կան տեղեկություններ, որոնք հաջորդ՝ 5-րդ դարին են վերաբերում: Ապա՝ այդ գրքում մի շարք հատվածներ արտագրված են Կորյունի «Մաշտոցի վարքը» գրքից, որը գրվել է 442 թվականից հետո, այսինքն՝ 5-րդ դարում: Եզրակացությունն այն է, որ Ագաթանգեղոսն իր գիրքը գրել է 4-րդ դարում, իսկ 5-րդ դարում ուրիշները լրացրել են:

Ագաթանգեղոսը 4-րդ դարում ի՞նչ լեզվով ու ի՞նչ տառերով կարող է գրած լինել իր «Հայոց պատմությունը»: Նա կարող է գրած լինել հայերեն, բայց՝ հունական տառերով կամ հայկական ինչ-որ հնագույն տառերով: Ապա՝ նա կարող էր գրել հունարեն (անշուշտ՝ հունական տառերով), որ ամենից հավանականն է, իսկ 5-րդ դարում, երբ արդեն հայոց մաշտոցյան տառերը կային, այդ գիրքը ուրիշները կարող էին թարգմանել հայերեն: Այդ թարգմանության ժամանակ էլ, հնարավոր է, որ կատարվել են լրացումներ:

Ագաթանգեղոսը պատմում է, թե ինչպես հայոց Խոսրով թագավորը հաղթանակներ էր տանում պարսիկների նկատմամբ, և պարսից թագավորը, որոշում է վրեժ լուծել: Պարթևներից մի իշխան՝ Անակ անունով, հանձն է առնում թագավորից վրեժ լուծել: Պարսից արքան նրան ուղարկում է հայոց Խոսրով թագավորի մոտ: Անակը ձևանում է պարսից թագավորից փախստական պարթև: Հետո իր եղբոր հետ սպանում է Խոսրովին: Հայերը Անակին և նրա ամբողջ տոհմը սրի են քաշում, միայն Անակի երկու մա-

նուկ որդիները են փրկվում՝ մարդիկ մեկին տանում են արևելք՝ պարսիկների, մյուսին արևմուտք՝ հույների կողմերը: Այդպես պարսիկները են հայերին հաղթում, կոտորած անում, և մի մարդ փրկում է Խոսրով թագավորի մանկահասակ Տրդատ որդուն ու տանում հույների կողմերը:

Անակի՝ փրկված որդին Գրիգորն էր, որ մեծանում էր Փոքր Հայքում, քրիստոնեական շրջապատում: Նա լինում է զինվորական, ապա գնում է արքայազն Տրդատի մոտ ծառայության: Գրիգորը քրիստոնյա էր և հրաժարվում էր կատարել Տրդատի կարգադրությունները՝ հայ հեթանոս աստվածներին զոհեր մատուցել: Ապա թագավոր Տրդատը սկսում է Գրիգորին զանազան տանջանքների ենթարկել, որ նա հրաժարվի քրիստոնեությունից: Նրա հրամանով Գրիգորին մի ոտքից գլխիվայր կախում են, սաստիկ ծեծում. «Տասը մարդ տանջեցին նրան, ըստ թագավորի հրամանի, և այդպես յոթ օր կախված մնաց»,— գրում է Ագաթանգեղոսը: Հետո մեխերով Գրիգորի ոտքի ներբանները են ծակծկում, նրան մերկ պառկեցնում են փշերի վրա, մարմնին հալած կապար են լցնում և այլն: Գրիգորը չի հրաժարվում քրիստոնեությունից:

Իսկ երբ թագավորն իմանում է, որ Գրիգորն իր հորը սպանող Անակի որդին է, հրամայում է նրան կապկպել ու գցել Արտաշատի բանտերից մեկը: Այն ժամանակ բանտը խոր փոս էր՝ վիրապ. «Դժնդակ, հեղձուցիչ, անտանելի տեղ, թանձր տիղմ, օձախառն ու խորը»,—այսպես է նկարագրված Ագաթանգեղոսի գրքում այդ բանտ-վիրապը: Այդ փոսից դեռ ոչ ոք կենդանի դուրս չէր եկել: Մի այրի կին ամեն օր Գրիգորի փոսն է գցում մի նկանակ (փոքր, կլոր հաց), և այդպես 13 տարի Գրիգորն ապրում է խոր վիրապում:

Այդ ժամանակ Հռոմի Դիոկղետիանոս կայսրը, որ քրիստոնյաներին դաժանորեն հալածում էր, իր քաղաքում հավանում է մի քրիստոնյա կույսի՝ գեղեցկուհի Հռիփսիմեին: Այս աղջիկը քրիստոնյա կույսերի միաբանության մեջ էր: Նրանց բոլորի ղեկավարն էր Գայանեն: Դիոկղետիանոսն ուզում է ամուսնանալ Հռիփսիմեի հետ: Հռիփսիմեն հրաժարվում է: Հռոմեացիները սկսում են հալածել կույսերին: Եվ բոլոր կույսերը՝ ավելի քան 70 հոգի, Գայանեի ղեկավարությամբ փախչում են Հայաստան: Նրանք գալիս են Վաղարշապատ և բնակվում այգիներում, մի հնձանի մեջ:

Դիոկղետիանոսը նամակով Տրդատին հայտնում է քրիստոնյա կույսերի փախուստի մասին: Տրդատի մարդիկ գտնում են կույսերին, և այս անգամ հայոց թագավորն է ուզում ամուսնանալ գեղեցկուհի Հռիփսիմեի հետ: Նրան բերել է տալիս պալատ: Հռիփսիմեն մերժում է հեթանոս թագավորին, մնում է հավատարիմ իր քրիստոնեական ուխտին և փախչում պալատից: Տրդատի դահիճները վրա են հասնում և սոսկալի տանջանքներով սպանում Հռիփսիմեին, ապա ըսպանում նրա 32 ընկերուհիներին: Սպանում են նաև մյուս կույսերին: Տանջամահ են անում Գայանեին՝ երկու ընկերուհիների հետ:

Դրանից հետո Տրդատը հիվանդանում է, կատաղում, «աղբ որոնող խոզերի կերպարանք էր ստացել»,— գրում է Ագաթանգեղոսը: Տրդատի քույր Խոսրովդուխտն, ըստ իր տեսիլքի, ասում է, որ իր եղբորը կարող է բուժել խոր վիրապում գտնվող մարդը: Գրիգորին փոսից հանում են, զգեստավորում և բերում Վաղարշապատ: Ծանապարհին Գրիգորին ընդառաջ է գալիս հիվանդ, դիվահար Տրդատը: Գրիգորը հանդարտեցնում է նրան, իսկ որոշ ժամանակ անց՝ բուժում:

Ապա,— ինչպես գրում է Ագաթանգեղոսը,— Գրիգորին տեսիլք է հայտնվում՝ մարդկային լուսեղեն մի կերպարանք, ձեռքին ոսկե մուրճ (կռան), հետևից՝ կըրակի նման զորք: Նա արծվի պես իջնում է Վաղարշապատի կենտրոնում և մուրճով խփում գետնին: Նույն տեղում կար լույսի սյուն և ոսկե խարիսխ, ապա կային երեք ուրիշ ոսկե սյուներ և ոսկե խարիսխներ՝ մեկը՝ Գայանեի ու սրա ընկերուհիների, մյուսը՝ Հռիփսիմեի ու նրա ընկերուհիների նահատակության տեղերում, մեկն էլ այն հնձանի տեղում, ուր ապաստանել էին կույսերը: Գրիգորն ասում է, որ մայր տաճար պիտի կառուցվի այն տեղում, ուր ամենից բարձր հրեղեն սյունն էր և լուսավոր այրը մուրճով խփեց գետնին: Իսկ մյուս երեք սյուների տեղում պետք է մատուռներ կառուցվեն: Եվ այդպես էլ անում են: Ինքը Տրդատը քար է կրում կառուցումների համար: Հետագայում մայր տաճարը կոչվեց **Էջմիա-**

ծին, որ գրաբար է և նշանակում է **Միածինն իջավ**: Միածինը Քրիստոսն է: Կույսերի նահատակության տեղում կառուցվեցին մատուռներ, հետո՝ տաճարներ՝ Ս. Գայանե, Ս. Հռիփսիմե և Շողակաթ (այս վերջին անունը նշանակում է շող կաթաց, լույս իջավ): Չորս տաճարներն էլ այժմ կան Էջմիածնում: Իսկ որտեղ որ վիրապից դուրս եկած Գրիգորը հանդիպել է Տրդատին, հետագայում կառուցվեց Զվարթնոց տաճարը (զվարթուն՝ նշանակում է հրեշտակ, զվարթնոց՝ հրեշտակաանոց):

Այսպես, Տրդատ III-ը և նրա ընտանիքն ընդունում են քրիստոնեություն: Գրիգորն սկսում է մկրտել հայերին: Մկրտում էր ջրով: Դա ըստ քրիստոնեական կանոնի, նշանակում է մարդուն լվանալ, մաքրել մեղքերից: Տրդատին, Աշխեն թագուհուն, թագավորական տան մյուս անդամներին, շատ նախարարների ու զորքին Գրիգորը մկրտեց Եփրատի վտակ Արածանի գետի մեջ: Դա տեղի է ունենում այն ժամանակ, երբ Գրիգորը Փոքր Հայքի Կեսարիա քաղաքում եպիսկոպոս օծվելուց հետո թագավորի և մեծամեծների հետ վերադառնում էր Վաղարշապատ:

Հետո Գրիգորն իր մարդկանցով շրջում էր Հայքում, քարոզում քրիստոնեություն և կարգադրում էր քանդել կամ վերափոխել հեթանոսական տաճարները (մեհյանները) ու բագինները (զոհասեղանները): Այդպես, նա Արտաշատում և Երազամույնում քանդել տվեց Անահիտ դիցուհու բագինը, մի այլ տեղ՝ իմաստության և ուսման աստված Տիրի տաճարը, Դարանաղյաց գավառի Թորդան (նախկին Թորգոմա) գյուղում ավերել տվեց Բարշամինա աստծու մեհյանը, սրա մոտակայքում՝ հին Անի ավանում քանդել տվեց Արամազդի մեհյանը, հարևան Եկեղյաց գավառի Երազ ավանում Գրիգորի մարդիկ ջարդեցին Անահիտ դիցուհու ոսկե արձանը, քիչ այն կողմ՝ Թիլ ավանում քանդեցին Նանե աստվածուհու մեհյանը, Բագայառիճ գյուղում ամայացվեց Միհր աստծու մեհյանը, վերացվեցին Տավրոս լեռան դիմաց գտնված Աշիշատի մեհյաններն ու բագինները (Վահագնի, Ոսկեմայր Անահիտի և Աստղիկի):

Այսպես, Գրիգորը Տրդատ III-ի հովանավորությամբ ավերում էր հեթանոսական տաճարները, հաճախ էլ վերափոխում դրանք քրիստոնեականի: Քանդված մեհյանների տեղում կառուցվում էին քրիստոնեական նոր տաճարներ (եկեղեցիներ), մեհյանները քիչ ձևափոխելով դարձնում էին քրիստոնեական տաճարներ: Հայաստանի հնագույն եկեղեցիները պարզ կառուցվածք ունեն՝ ուղղանկյուն սրահ, պատերի վրա՝ տանիք, վրան գմբեթ (կոչվում են բազիլիկ): Նրանց մի մասը նախկին հեթանոսական տաճարներ են:

Գրիգորը հիմնեց երկու տեսակ դպրոցներ՝ հունարեն և ասորերեն դասավանդությամբ: Նա նաև քահանաներ ու եպիսկոպոսներ կարգեց՝ մեծ մասամբ քրմերի զավակներից:

Այսպիսով, աշխարհում առաջին պետությունը, որտեղ քրիստոնեությունը երկրի կրոնը հայտարարվեց, Հայաստանը եղավ: Դրանից 12 տարի անց՝ 313 թվականին Հռոմեական կայսրության մեջ քրիստոնեությունը հայտարարվեց թույլատրելի կրոն:

Հայ ժողովուրդը նոր կրոն, նոր լուսավորություն ստացավ: Հայքում տարածվում էր քրիստոնեական սիրո ուսմունքը: Եվ Գրիգորը ժողովրդի կողմից կոչվեց Լուսավորիչ:

Ագաթանգեղոսի «Հայոց պատմության» մեջ տեղ գտած իրական դեպքերի պատմությունը հաճախ միահյուսված է երևակայականով: Որոշ տեղերում դեպքերի մասին գրված է ըստ ժողովրդի պատմածների, քանի որ Ագաթանգեղոսն ամեն ինչ չէ, որ կարող էր տեսած լինել իր աչքերով: Իսկ ժողովրդի հիշողության մեջ, ինչպես գիտենք, իրական դեպքերը երբեմն առասպելի ձև են ստանում, երբեմն շփոթվում են պատմական մարդիկ ու դեպքերը: Պատմաբանների դերն է ճշտել ամենը: Օրինակ, ըստ Ագաթանգեղոսի գրքի, Գրիգոր Լուսավորիչը պարթև է, բայց պատմաբանները փաստեր են բերում, որոնց համաձայն նա հայ է եղել՝ Փոքր Հայքից: Առհասարակ, ամբողջ տոհմին կոտորելու և մի մանկան փրկելու պատմությունը Ագաթանգեղոսի և հայ ուրիշ պատմիչների գրքերում հաճախ է հանդիպում: Դա հեքիաթանման է, ուստի միշտ չէ, որ կարելի է այն իրողություն համարել:

Ամեն դեպքում, Ագաթանգեղոսի գիրքը ամենալավ աղբյուրն է 4-րդ դարի սկզբներում Մեծ Հայքի մեջ կատարված դեպքերն ուսումնասիրելու համար:

(շարունակելի)

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



## ԱԽՊԵՐՋԱՆ

Ախպերջան գյուղը գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում: Փոքրիկ բնակավայր է, բայց հին պատմություն ունի: Ասում են՝ շատ հնում այս գյուղում միմյանց ջերմագին սիրող քույր ու եղբայր են լինում: Մի անգամ թշնամին հարձակվում է Արցախի վրա, և եղբայրը զենք է առնում ու գնում թշնամուն ընդառաջ: Այդ գնալն է՝ որ գնում է: Քաջի պես ընկնում է մարտում, և քրոջ աչքը մնում է ճանապարհին: Աղջիկը նստում է գյուղ բերող ճանապարհի եզրին և լաց լինում՝ մշտապես կրկնելով «Ախպեր ջան, ախպեր ջան» բառերը:

Քրոջ այդ ողբը այնքան է ազդում մարդկանց վրա, որ նրանք իրենց գյուղն անվանում են Ախպերջան:

## ԱՂՋԱՔԵՆԴ

Աղջաքենդը գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանում, Ջիարաթ լեռան հյուսիսարևելյան ստորոտում: Ոչ միայն Արցախի, այլև աշխարհի հնագույն բնակավայրերից է, միշտ էլ ունեցել է հայկական դիմագիծ, վերջին հինգ հազար տարում այս գյուղում հայերից բացի որևէ այլազգի չի ապրել: 1988 թվականի տվյալներով գյուղն ունի 350 հայ բնակիչ, ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան:

Հարյուր տարի էլ չկա, ինչ հայկական այս հնամենի գյուղը վերանվանվել է Աղջաքենդ: Այդ անվանափոխությունը կատարվել է օտար իշխանավորների քմահաճույքով: Աղջաքենդ կամ Աղաջաքենդ թուրքերեն է և նշանակում է ծառագյուղ կամ անտառագյուղ: Իսկ մինչ այդ, հազարավոր տարիներ շարունակ գյուղը կոչվել է Խանձաձոր կամ Խանձողաձոր հայկական անունով:

Այդ գյուղանվան մասին պահպանվել է մի ավանդություն, որ մեզ կապում է հայ ժողովրդի պատմության վաղնջական շերտերի, դիցաբանական ժամանակների հետ:

Մեզնից յոթ անգամ հազար տարի առաջ Ջիարաթ լեռան լանջին բխում էր հայոց Երազանքի աղբյուրը: Այդ աղբյուրից խմողն ընկնում էր պայծառ երազների մեջ և առժամանակ մոռացության տալիս կյանքի տառապանքները: Երազների աղբյուրի ջրից ամենից շատ խմում էր հայոց դպրության աստված Տիրը: Դրա շնորհիվ Տիրը դարձել էր աշխարհի ամենապայծառ երևակայության տեր աստվածը:

Հայոց աշխարհի թշնամի աստվածները սև ամպեր են ուղարկում Արցախ և ջանում մթության մեջ պահել Ջիարաթ լեռն ու նրա շրջակայքը, չընթողնել, որ հայերը խմեն Երազանքի աղբյուրի ջուրը: Մթության քողը պատռելու համար Տիրը իր աչքերից կայծեր է թափում և լուսավորում չորս կողմը: Ահա այդ կայծերից հրդեհվում են Ջիարաթի ձորահովտի առանձին ծառեր և լուսավորում այն ճանապար-

հը, որ տանում է դեպի հայոց Երազանքի աղբյուրը:

Վառվող ամեն մի ծառ նման էր խանձածողի՝ կիսավառ փայտի, որի պատճառով էլ այստեղ եղած գյուղը կոչվում է Խանձածողածոր և հետագայում սեղմվում ու դառնում Խանձածոր:

Ահա այս Խանձածորն է, որ թուրքերեն աղճատված թարգմանությամբ ստացել է Աղջաքենդ անունը:

## ԱՇԱՆ

Լեռնային 'Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանի Աշան գյուղը ավելի տարեց է, քան հին Բաբելոնը:

Արցախը հայկական հացահատիկի հայրենիքներից է, իսկ արցախական Աշանը՝ հացի այն բնօրրաններից մեկը, որն իր անվամբ կապված է հացի արարման պատմությանը:

Աշան նշանակում է կալի մեջ փռած կալսելու հացահատիկ: Եվ հացապաշտ արցախեցին իր գյուղերից մեկն անվանել է հենց Աշան:

Աշան գյուղը գտնվում է շրջկենտրոնից 25 կիլոմետր հյուսիս-արևմուտք: Ունի միջնակարգ դպրոց, որ հիմնադրվել է 1907 թվականին, ակումբ, գրադարան, բուժկայան: Աշանում ընտիր ցորեն է աճում: Տարին բոլոր այս գյուղից հացի բույր է գալիս:

Աշանում է ծնվել սովետական կուսակցական և պետական ականավոր գործիչ Լևոն Միրզոյանը, որն անհատի պաշտամունքի տարիներին անհիմըն բռնադատվել է, գնդակահարվել 1938 թվականին ու հետմահու արդարացվել է: Լևոն Միրզոյանը վարել է մի շարք պատասխանատու պաշտոններ, 1937 թվականին եղել է Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարը:

## ԱՌԱՔՅՈՒԼ

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանում Առաքյուլ անունով մի գյուղ կա: Մի ժամանակ սա այնքան մեծ բնակավայր էր, որ ամեն տարի այստեղ հիսունից ավելի հարսանիք էր լինում: Հիմա փոքրացել է, դարձել սակավաթիվ:

Առաքյուլը քրիստոնեության հասակակիցն է, քրիստոնեաշունչ անուն: Քրիստոնեության առաջին գաղափարախոսները, այդ ուսմունքի առաջին տարածողները կոչվել են առաքյալներ, այսինքն՝ մարդիկ, որոնք աստծո կողմից իբր ուղարկվել են այստեղ ու այնտեղ քրիստոնեություն քարոզելու: Առաքյալ բառացի նշանակում է ուղարկված, բայց բոլոր ուղարկվածները չէ, որ առաքյալ են կոչվում: Քրիստոնյա աշխարհում առաքյալ են կոչվում որևէ ուսմունք քարոզող, որևէ լուսավոր նպատակով մի տեղ գնացած անձնավորությունը, այս կամ այն ուսմունքի նվիրյալը: Քրիստոսի ուսմունքը քարոզող առաջին առաքյալների անունով հայոց եկեղեցին կոչվում է Առաքելական:

Ահա այդ առաջին առաքյալներից մեկը 19 դար առաջ եկել է Արցախ և զբաղվել քարոզչությամբ: Ի պատիվ նրա՝ գյուղը կոչվել է Առաքյալ, որ հետո հնչյունափոխվել է, դարձել Առաքել, ապա՝ Առաքուլ:

## ԱՎԴՈՒՌ

250 բնակիչ ունեցող Ավդուռ գյուղը գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում:

Արցախ-Ղարաբաղի մյուս գյուղերի նման Ավդուռն էլ փոքրացել է վերջին հարյուրամյակում:

Գյուղն Ավդուռ է կոչվել մեկուկես հազարամյակ առաջ: Այդ գյուղանվան մասին ահա թե ինչ է ասում զրույցը: Այս կողմերում Ավագ անունով մի իշխան էր ապրում: Սա դաժան ու փառասեր մարդ էր: Իր կալվածքից սկըսվող մեծ ճանապարհի վրա նա կամարաձև մի դարպաս էր պատրաստել և պարտադրել, որ բոլոր շինականները առավոտյան աշխատանքի գնալիս և երեկոյան տուն վերադառնալիս, որպես հպատակության նշան, անցնեն այդ կամարի տակով: Այդ դարպասը մարդիկ անվանեցին Ավագի դուռ, որ հետո սեղմվեց ու դարձավ Ավդուռ: Այդպես կոչվեց նաև գյուղը: Հետո ժամանակներ անցան, Ավագի դուռը քանդվեց ու չքացավ աշխարհի երեսից, բայց գյուղի անունը մնաց Ավդուռ և պահեց այս հին պատմությունը:

# ՄԱՐՄԱՐԻԿԻ ՎԻՇՏԸ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ջուրը լիքն է վշշոցով: Ափերից մեկի եզերքով փայտե երկար անցուղի է կապած. վրայով քայլելիս ասես ուղղակի գետի վրա լինես: Առողջարանը կառուցելիս այդ մանրամասը չեն մոռացել, որ պեսզի մարդիկ հնարավորին չափ մոտ գտնվեն ջրին:

Մարմարիկն է: Սահանքավոր գետը, սակավաջուր, բայց՝ ի՜նչ աղմկարար:

Որտեղի՞ց է գալիս: «Հանքավան» առողջարանը 2000 մ բարձր է ծովի մակերևույթից: Մարմարիկի ակունքն, ուրեմն, շատ ավելի բարձր է: Հաճելի է գետի ձայնը. հենվում ես գետեզրյա բազրիքին ու ականջ դնում. հոգին խաղաղեցնող ձայներ են, որ պարուրում են մարդու էությունը, կտրում առօրյա հոգսերից, ու ստիպում լսե՜լ, լսե՜լ:

Գետի ոլորապտույտ հունը լիքն է տարբեր գույնի ու երանգի քարաբեկորներով. կանաչ, նարնջագույն, սև, մոխրագույն. մարմարի կտորներ են, որ ջուրը փորելհանել է ընդերքից կամ հղկելով, տաշելով բերել վերին հոսանքներից: Ջրից դուրս ցցված մի խոշոր բեկորի վրա ճաքեր են առաջացել, քամին մեջը հող է լցրել, ու խոտ է բուսել: Նկարելու արժանի տեսարան է:

Մեկ այլ՝ կարմրավուն գլաքարի վրա սևուկ թռչուն է նստել. մնում-մնում՝ իջնում է, կտցահարում ջուրը, թևիկները թափահարում է, թը՜ռ՝ վեր ու վար, ու նորից իջնում է գլաքարին:

Նայում ես, նայում, աչքերդ շաղվում են. ջրերը վազում են, զարկվում քարերին, արևի շողերը փայլփլում են կոհակներին, և ափսոս, ուրախությանը տխրություն էլ է խառնվում:

Գետը մաքուր չէ՜: Ինչքա՜ն ավելի գեղեցիկ պետք է լիներ Մարմարիկը, եթե մարդիկ նրա հանդեպ բարի լինեին: Երևի ճիշտ չէ ասել՝ բարի՜ լինեին, այլ՝ խելամիտ ու սրտացավ լինեին, ինչ պատահեր, չնետեին այնտեղ: Իսկ Մարմարիկի ջրերում գիտե՞ք ինչեր տեսա. երկաթե լարեր, խողովակներ, ավտոդողեր, ծակված տաշտակ, փայտի կտորտանք... և, ամենաասրսափելին՝ պահածոյի թիթեղյա տուփեր ու ջարդված շշեր: Կարծես թե՝ ում ինչ պետք չի եղել, շպրտել է այնտեղ:

Ինչ տգեղ, սարսափելի տգեղ երևույթ է այդ: Գետը չէ՞ որ կենդանի օրգանիզմ է, բնության շքեղ մի մասը, որը ոչ միայն մեզ խնդություն է պարգևում, այլև մեր դաշտերին ու այգիներին կենարար ջուր բերում: Ավելին, այնտեղ, որտեղ աղբյուրներ չկան, գետի ջուրը խմում են, այդ ջրով լողանում են, լվացք են անում: Առաջներում Մարմարիկն այնքան մաքուր էր, որ նրա ջուրն էլ էին խմում: Իսկ հիմա...: Նույնիսկ վտանգավոր է, երբ երեխաները լողանում են, ոչ միայն աղտոտվածության համար, այլ... քանի՜-քանի՜ դեպքեր են եղել. ոտաբոբիկ երեխաները ոտք են դրել ջարդված ապակու կամ ժանգոտ թիթեղի վրա:

Որքան արտասուք և որքան արյուն է խառնվել այդ ջրերին: Հենց վերջերս առողջարանի բժիշկը պատմեց, որ իր մոտ են բերել մի պատանու, որի կյանքը հազիվ են փրկել:

Մարմարիկի հովիտը, մեր լավագույն հանգստավայրն է, իսկ գետը՝ նրա զարդերի զարդը: Փառք աստծո, ձուկ դեռևս կա: Լավ էլ ձուկ է՝ կարմրախայտ: Բայց, իհարկե, ոչ այնպես առատ, ինչպես տարիներ առաջ:

Քայլում ես գետեզերքով ու փորձում գտնել մի մաքուր հատված, կանգնում ես, նայում. հատակին շողշողում են բազմագույն քարերը, արևը խաղում է ալյակների հետ, ու հանկարծ այդ ակնապարար տեսարանը կորցնում է իր հմայքը: Նկատում ես ժանգոտ խողովակի կըտորը, հայացքդ շրջում ես, հիմա էլ ջրից դուրս է ցցվել մաշված կոշիկի քիթը: Այնքան էլ ցավալի ու տգեղ տեսարա՞ն: Տըրամադրությունդ միանգամից փչանում է: Կարծես քո մաքուր զգեստին մեկը իր կեղտոտ ձեռքերն է քսել:

Անաղարտ բնությո՜ւնն է, որ հանգըստացնում, հաճույք է պատճառում: Իսկ բնությունն անաղարտ է այնտեղ, որտեղ մարդի՛կ՝ մեծերը թե փոքրերը, գնահատում են գեղեցկությունը, գիտեն նրա հարգը: Այդ մարդիկ ո՛չ միայն պահպանում են, այլև արգելում, որ ուրիշներն աղտոտեն ու փչացնեն:

Հաջորդ զրույցը, իմ պատանի բարեկամ, կպատմ այն մասին, թե որտեղից է սկիզբ առն ւմ Մարմարիկ գետը: Եվ թե ինչպես իմ աչքի առաջ ջուրը հորդեց, դուրս եկավ իր ափերից, ամեն ինչ բշեց-տարավ, բայց դարձյալ գետի հունը չմաքրվեց:

Իսկ հիմա ուշադիր լսիր, թե դու ինչով կարող ես օգնել մեր ընդհանուր գործին՝ հայրենի բնության պահպանությանը: Թերևս ընկերներով պայմանավորվեք, որ այլևս մոտակա գետի, ջրամբարի կամ լճի մեջ աղբ չնետեք: Ոչ մի բան, թեկուզ և թղթի մի փոքր կտոր, կոտրված ճյուղ, դատարկ շիշ: Գրիր մեզ և հավատա, որ բոլորս միասին ո՛չ միայն կարող ենք մաքրել, մեր շրջապատը, այլև ավելի հարստացնել ու գեղեցկացնել:

Հայկական գյուղ է Կարճևանը՝ իր ձորով, ձորամիջի քաղցր աղբյուրով, ձորագլխին թառած այգիներով ու այգիների վրա կախված քարաշեն տներով: Գյուղամիջի ճամփաները դիք-դիք են, ու քաղաքաբնակիդ ոտքերը մի կերպ են հաղթահարում վերընթացը:

Կարճևանը հայի գյուղ է. ուրեմն՝ պիտի եկեղեցի ու դպրոց փնտրես առաջին հերթին: Երկուսն էլ կան. եկեղեցին՝ չըգործող, դպրոցը՝ դեռ դիմանում է: Բարձըր տեղ է կառուցված դպրոցը՝ ինքը գյուղի աչքի առաջ, գյուղն՝ իր: Տնօրեն Մելինե Գևորգյանը մի մատենիկ ունի, ըստ որի ծխական դպրոցը հիմնադրվել է 1873 թվականին՝ ունենալով 26 աշակերտ: 1875-ին վերափոխվել է մասնավոր ուսումնարանի: 1876-ին ունեցել է 28 աշակերտ և մեկ ուսուցիչ: Մինչև 1895 թվականը չի գործել: 1895-ից եղել է եկեղեցական ծխական դպրոց: Ուրեմն, դպրոցը ճիշտ 115 տարեկան է, և արդար ու իրավացի է տնօրենի հպարտությունը, որ այցելուին առաջին հերթին իր արտաքուստ անշուք մատենիկն է առաջարկում, հետը շեշտելով՝ տես, կանք, դեռ ապրում ենք: Իսկապես ուրախություն է. շահ ու սուլթան ու ցար են եղել, ու եղել է Կարճևանի ծխական դպրոցը: Սրանք անցել են, դպրոցը կա: Բայց մատենիկը նաև մի տխուր-տխուր պատմություն ունի, որը թվերի լեզվով է. 1958 թվին աշակերտները 106-ն են եղել, 1964-ին՝ մոտ 90-ը, 80-ականների սկըզբին՝ շուրջ 60: Այսօր դպրոցում սովորում է 37 երեխա: Ուրեմն՝ շահ ու սուլթան, ցար ու Ստալին է եղել, բայց դըպրոցը դիմացել է, իսկ հիմա՞...

Հիմա, հազարումի կեռման ու ոլորան անցած, իր անմահության իրավունքը կարծես թե հաստատած հայ դպրոցը ներսից է քայքայվում: Մեր անխոհեմության արդյունքով: Մեր թեթևամտության հետևանքով: Տոհմիկ դժվարից օտարամուտ հեշտին դառնալու մեր ծայրահեղականությամբ:

Ի՞նչ է պատահել:

Մեղրիի շրջանում գունավոր մետաղների հարուստ հանքաշերտեր են հայտնաբերվել, ու 1949 թ.-ին, այստեղ սկըսվել է հանքահարստացուցիչ ֆաբրիկայի, հետն էլ՝ Ագարակ քաղաքատիպ բնակավայրի շինարարությունը: Դրանից էլ լավ բա՞ն,— կասեք,— մի նոր շեն է ավելացել Հայաստանում: Լավը լավ է, բայց եկեք, տեսեք, որ Ագարակի «քաղաքատիպ» ածանցյալը փորձանք դարձավ շրջանի շեների գլխին: Նոր էր, գրավիչ, փողոցները՝ ասֆալտած, տները՝ պլանային, աշխատանքի գնալը՝ ծառայողական ավտոբուսով: Ու շրջանի գյուղերից մարդիկ սկսեցին մղվել Մեղրիի № 2 քաղաքը՝ Ագարակ: Ու քանի որ Կարճևանն ամենամոտն է նորաշեն ավանին, ամենից մեծ կորուստը ունեցավ ու հիմա էլ շարունակում է կորուստներ տալ: Ջահելները այլևս գյուղում տուն չեն կառուցում, գնում են «քաղաք», երեխա ունենում ու տալիս Ագարակի դպրոցները, իսկ Կարճևան գյուղի ոչ լրիվ միջնակարգի տնօրենն ասում է. «Այս տարի երկրորդ դասարան չենք ունենա: Ամեն դասարանում 7 աշակերտ է: Տասներկու ուսուցչին՝ 37 երեխա»: Պատմում է տնօրենը, ու խոսքը լացի պես է: Ձեռքին երեխաների ցուցակն է՝ այս տարի չի գա այնինչն էլ, սրա ծընողները տեղափոխվում են Ագարակ, սրանը՝ Մեղրի, սրանը՝ Երևան:

Շատ եմ լսել, որ ուսուցիչները, հատկապես փորձառուները, մեծ դասարաններ են սիրում, երեխաների շատություն, դասամիջոցին սենյակ ու միջանցք լցնող աղմուկ-աղաղակ: Ու հիմա դասասենյակները շրջելով պատկերացնում եմ այն լռությունը, որ այստեղ է լինելու: Ընդամենը երեսունյոթ երեխայի աղմուկն ինչ պիտի լինի:

Դասասենյակները համեստ-հնամաշ են, գույքն էլ, պիտույքներն էլ: «Գյուղական սովետը միջոցներ չունի» բացատրությունն ակնկալվում էր և չուշացավ: Երևան մեծ քաղաքում հսկա դպրոցներ են կառուցվում ամենաարդիական կահկարասիով, Չեխովի անվան դպրոցի ճակատը միայն կրկնակի նորոգվում է, որ քարերի գույնը տեղիս ուսուցիչ-ծնող-աշակերտներին հաճո լինի, իսկ գյուղական դպրոցը թանգարան է հիշեցնում՝ նախկին գյուղաբնակիս ու գյուղի դպրոցում ուսում առածիս մեջ կարոտախտի նշաններ արթնացնելով: Այստեղ երևի պատշաճ է, որ հարցնեմ՝ իսկ ո՞ւր է շըրջանի ղեկավարությունը, ո՞ւր է նայում շրջժողկրթբաժինը... Բայց իրենք՝ կարճևանցիք էլ տարիներ շարունակ տալիս են այս հարցերը, և լինում է ձայն բարբառո հանապատի, իսկ աշակերտների թիվը պակասում ու պակասում է:

Հատկապես հեռավոր գյուղերի դըպրոցների ճակատագրին առնչվող մի հարց

էլ կա, որ տևական հիվանդություն է դառնում արդեն: Ոչ մեկիս համար գաղտնիք չէ, որ մեր մանկավարժական բարձրագույն հաստատությունների շրջանավարտները դժվարությամբ են գնում, չկամ են գնում գյուղ, գնացողն էլ մի կերպ մի տարի, երկու տարի դիմանում ու...

Կարբեցի՝ մանկավարժություն ուսանած տեղացի երիտասարդները հիմնականում վերադառնում են գյուղ, քիչ չեն նաև այն ուսուցիչները, որոնք, ծնունդով այլ-այլ վայրերից, գալիս այստեղ տունուտեղ են դնում, արմատակալումնում են: Մեզ համար պակաս կարևոր չէ, ասաց, որ 12 ուսուցիչներից չորսը տղամարդիկ են: Տղամարդ ուսուցչի ներկայությունը դպրոցում անհրաժեշտ է և բարենպաստ ազդեցություն է գործում հատկապես տղա երեխաների դաստիարակության վրա:

Կարբեցի դպրոցի ամենամյա չորսհինգ շրջանավարտներից մեկ-երկուսը պարտադիր ընդունվում են բարձրագույն ուսումնական հաստատություն: Բայց կա մի տխուր և անհանգստացնող հանգամանք: Գյուղից հեռացողներն, ախր, այդ դպրոցի նախկին աշակերտներն են ու երևի վատ էլ չեն սովորել: Ուսման մեջ, սակայն, պակասել է մի շատ կարևոր բաղադրիչ՝ երեխայի հոգում կոնկրետ, թույլ տվեք ասել, տեղային հայրենասիրության դաստիարակումը: Որ ամենալավը գյուղամիջի դժվար ճամփան լինի, ամենասիրունը՝ ցանկապատից փաթաթված մոշի թուփը, ամենաքաղցրը՝ ձորաղբյուրից ջուրը: Իմ լոռեցի ընկերը լոռիական ամեն բան աշխարհի լավագույնըն է համարում, ու ոչինչ, որ մեկ-մեկ հանաքով «բակային նացիոնալիստ» պիտակվի. գիտի, որ իրեն պահող հողն ամուր է, ու ինքը հողով է ամուր:

Գյուղամիջի վայրընթաց ճամփան ինձ հանում է Կարբեն—Աշտարակ նոր, ասֆալտապատ ճանապարհը: Հետևում են մնում ձորը, կարբեցիների կախովի այգիները, կամաց-կամաց աղոտանում են գյուղի վերևում թառած դպրոցի ուրվագծերը, իսկ մտքիս մեջ տնօրեն Մելինե Գևորգյանի մատենիկն է. «Աշակերտների թիվը՝ 1959-ին՝ 106, 64-ին՝ 90, 80-ին՝ մոտ 60»: Գուցե հենց ա՞յս տարի դադարի տխուր վայրէջքը, ու մատենիկում արձանագրվի Կարբեցի դպրոցի նոր տարեգրությունը՝ աշակերտների թիվը. 89-ին՝ 90, 90-ին՝ 106, 91-ին՝...

# ԱՍՈՒՅԹՆԵՐ

● Շփվել եմ մարդկային թերություններ ունեցող խոշոր արվեստագետների հետ: Հիշողությունս պահպանել է միայն նրանց մեծ արվեստի փայլատակումները:

● Ասում են. «Երաժշտություն չեմ սիրում, որովհետև չեմ հասկանում»: Երաժշտությունը պետք է զգալ, ինչպես բնությունը, հիանալ նրա գեղեցկությամբ, վայելել այն: Ինձ միշտ թվացել է, թե երաժշտություն, հատկապես՝ դասական երաժշտություն չսիրողները կարող են ասել նաև. «Բնություն չեմ սիրում, որովհետև չեմ հասկանում»:

● Ասում են, թե ճշմարտությունը ծնվում է վեճից, բայց հաճախ մոռանում ենք, որ վիճաբանելիս մենք պաշտպանում ենք մեզ և ոչ թե ճշմարտությունը:

● Ասում են՝ «կյանքը թատրոն է», «թատրոնը կյանքն է»: Շրջված իմաստ ունեցող արտահայտություններ: Բառի մեկ քայլ, և ասելիքի իմաստը կարող է արմատապես փոխվել: Մենք հաճախ անուշադիր, անզգույշ ենք այս հարցում: Այդ պատճառով էլ գրեթե ամեն քայլափոխի չենք հասկանում կամ հասկացվում, սայթաքում ենք, վիրավորվում ու վիրավորում: Եվ ընդամենը որևէ բառ ճիշտ տեղում չդնելու համար...

● Համբասանքն ու սուտ լուրը նույնպես «ինֆորմացիայի» աղբյուր են, հատկապես, երբ լուրին այն շատ անհրաժեշտ է կամ համընկնում է նրա սխալ պատկերացումներին:

ՄԱՐԿ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԽՈՒՍԱՓԵ՛Ք ԹՄՐԱՄՈԼՈՒԹՅՈՒՆԻՑ

Կեղծ ամոթխածությամբ թմրամոլության մասին աշխատել ենք լռել: Սակայն, ինչպես ժողովուրդն է ասում. «Ասեղը պարկում չես պահի», ու այժմ խնդիրը ջրի երես է բարձրացել: Ստույգ և վիճակագրական տվյալների համաձայն ՍՍՀՄ-ում հայտնաբերված են 130 հազարից ավելի մարդիկ, որոնք գեթ մեկ անգամ օգտագործել են թմրադեղ: Նրանցից 51 հազարն ուղղակի տառապում են թմրամոլությամբ և, որ շատ ցավալի է, 10-ից մեկը դպրոցական է: Լուրջ խնդիր է դարձել նաև թունամոլությունը, որը թմրամոլության առաջին աստիճանն է: Հայտնաբերված 22 հազար թունամոլներից 13 հազարն անչափահաս են: Օրինակ, Տաջիկստանում վերջին երեք տարիներին թմրադեղեր օգտագործողների թվանակն ավելացել է 11 անգամ: Նրանցից ութ հարյուրը 14-ից 18 տարեկան են՝ դպրոցականներ ու սովորողներ: Ի դեպ, Դուշանբեում հիմնադրվում է մեր երկրում իր օրինակը չունեցող հիվանդանոց, որտեղ պետք է բուժվեն թմրադեղ օգտագործած մանուկները, պատանիները և երիտասարդները: Հետևաբար, մենք ուղղակի պարտավոր ենք նրանց իրազեկ պահել վտանգի մասին, առավել ևս, որ պատանիների մոտ արատի տարածման հիմնական պատճառներն են հետաքրքրասիրությունը և ընդօրինակումը:

Թմրամոլությունը ծագում է որոշակի սոցիալական պայմաններում: Անձը հաճախ թմրամոլ է դառնում, երբ խախտվում է նրա փոխհարաբերությունը սոցիալական միջավայրի հետ: Հիշենք անմահ Թումանյանի արևելյան ավանդություններից «Աղջկա սիրտը», որտեղ սիրահար պատանին թմրամոլ է դառնում դժբախտ սիրո պատճառով և սկսում է օգտագործել խաշխաշի հյութը, որի ծաղիկը

Թեթև է, կարմիր: Բայց… սիրտը սև:

Քնաբեր, թմրեցուցիչ նյութերը մարդկանց հայտնի են անհիշելի ժամանակներից: Այդ նյութերը բարի և հոգատար ձեռքերում անփոխարինելի բուժական միջոցներ են, որոնց օգնությամբ բուժում են մարդկանց, փրկում ցավերից և տանջանքներից:

Հիրավի դժվար է արդի բժշկությունը պատկերացնել առանց թմրանյութեր պարունակող դեղամիջոցների, դրանց միջոցով հաղթահարվում են հիվանդությունների և վիրահատումների հետևանքով ծագած ցավերը: Մասնագետները թմրադեղերը օգտագործում են սահմանափակ և անհրաժեշտ չափերով, քանի որ չարաշահման դեպքում դրանք դառնում են կործանիչ: Այլ կերպ են վարվում շահամոլ, չարագործ ու գռեհիկ մարդիկ, որոնց ձեռքերում դեղերը վերափոխվում են ահավոր չարիքի:

Թմրադեղերը հիմնականում ստանում են հնդկական կանեփից, քնաբեր խաշխաշից, ամերիկյան կոկա կոչվող բույսից, ինչպես և քիմիական եղանակներով: Դրանց հիմնական արտադրող և արտահանող երկրներ են Բիրման, Լաոսը, և Թաիլանդը, որոնք հայտնի են «Ոսկե եռանկյունի» անվանմամբ: Համատեղ արտադրանքը տարեկան 600—700 տոննա հում օփիում է, որից հնարավոր է պատրաստել 60—70 տոննա հերոին՝ թմրադեղերից ուժեղագույնը: Այդ քանակությունը բավական է հարյուրավոր միլիոն մարդկանց թունավորման համար: Հերոինի արյունի բաժինը զարտուղի ճանապարհներով Մալագիայի ծովափին են հանում և տարածում աշխարհով մեկ: Այդ երկրի 15 միլիոն բնակիչներից կես միլիոնը թմրամոլ է: 1975-ից այնտեղ մահապատիժ է սահմանված այն անձանց համար, որոնց մոտ հայտնաբերում են 100 գրամից ավելի թմրադեղ: Պատժում են հրապարակներում: Երբեմն ոստիկանական մեքենաներն անասելի ոռնոցով ներխուժում են մարդաշատ հրապարակ, ավտոմեքենաներից դուրս են թռչում ոստիկանները և վարժ ու արագ կառուցում կառափնարան, վրան բարձրացնելով կախաղանը, ավտոմեքենայից դուրս են քաշում ձեռնակապերով բռնավորին և կախում քարացած ամբոխի աչքերի առաջ: Պատժվածի կրծքին կարմիր տառերով դրոշմված է լինում «թմրամոլ»: Ի դեպ, երբեմն ահաբեկելու համար կախում են խրտվիլակներ, բայց ասենք, որ արդեն մահապատժի են ենթարկվել 24 հոգի:

Թմրանյութերի համաշխարհային արտադրանքը շատ ավելին է, քան թե պահանջը: Վերահսկողությունից թողարկված ավելցուկը գաղտնի վաճառքի է հանվում հարստացնելով վաճառողներին և դժբախտացնելով գնորդներին:

Այո, դժբախտացնում, քանի որ նրանց երկարատև ու պարբերական օգտագործումը հանգեցնում է հիվանդագին թմրամոլության: Այդ աղետը շատ արևմտյան երկրներում ստացել է համաճարակային բնույթ: Բարեբախտաբար մեզանում այն ունի միմիայն լոկալ տարածում: Այդ պատճառով երկար տարիներ թվում էր, թե թմրամոլություն մեր երկրում գոյություն չունի, բայց վերջապես հայտնի դարձավ այդ երևույթի տարածման սոցիալական վտանգը և սկսվեց կազմակերպված պայքար:

Պարզվեց, որ երկրի մեկ միլիոն 800 հազար հեկտար տարածքի վրա աճում է վայրի կանեփ: Հատուկ բրիգադները կանեփի դաշտեր հայտնաբերեցին Հեռավոր Արևելքում, Կովկասում, առանձնապես Ղազախստանում և Կիրգիզական Չույ գետի հովտում: 1987 թ. Միջին Ասիայում և երկրի հարավում հայտնաբերվեցին խաշխաշի հազարավոր հեկտար անօրինական ցանքեր: Բռնագրավվեց և ոչնչացվեց թմրադեղերի հումքի հսկայական չհաշվառված պաշար, որը չարագործներին տալու էր հարյուրավոր միլիոնների եկամուտ:

Սպառնացող վտանգի մասին դատեցեք ինքներդ: Մարդիկ եթե գինեմոլ են դառնում տարիների ընթացքում, ապա թմրամոլ՝ շաբաթների, եթե ալկոհոլը կյանքը կրճատում է 10—15 տարով, ապա թմրադեղը՝ կրկնակի չափով: Դժվար թե հանդիպեք տարեց թմրամոլի, քանի որ երիտասարդ թմրամոլը անժամանակ ծերանում է և մահանում: Ախտահարվում են մարդու թոքերն ու սիրտը: Տեղի է ունենում տրամադրության, աշխատունակության անկում, հիշողության, ուշադրության խախտում, քնի սնուցման խանգարում: Բարոյական անկման, թմրամոլի վարած անկանոն կյանքի հետևանքով ավելանում է վեներական հիվանդությունների և սպիդ մահացու հիվանդությունով վարակվելու վտանգը: Թմրամոլը բառի բուն և փոխաբերական իմաստով ոչ տըղամարդ է և ոչ էլ կին, այլ բեռ է ընտանիքի, շրջապատի, ժողովրդի համար: Ուրեմն խուսափեք այդ ահավոր չարիքից, չէ՞ որ խուսափելը հեշտ է, քան թե հետագայում թմրամոլության ծուղակից դուրս գալը: Միաժամանակ հիշեք, որ ժամանակակից բժշկությունը տիրապետում է բուժման եղանակների, և դժբախտության դեպքում դիմեք մասնագետ-բժշկի, ի դեպ՝ որքան շուտ, այնքան լավ:

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ



Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱԹԱԲԵԿՅԱՆ Ն.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.